

Նկ. ՋԱՆԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

նող Հարսնասարի գագաթը: Էլ ինչպե՞ս հանգիստ կարելի էր ընդունել այն լուրը, որ մի նոր ոսոխ ուզում է անապատ դարձնել այս բոլորը: Երբ նա բանակ գնաց, այնքան ջահել էր, որ գյուղացիները մանուկ ժամանակվա պես նըրան Վահիկ էին կանչում: Նրա հետ մեկնեցին հայրը, հորեղբայրները, բազմաթիվ համագյուղացիներ: Բայց բոլորի աչքը Վահիկի վրա էր: Ախր շատ ջահել էր նա և շատ էր պետք գյուղին: Նոր էր գերազանց գնահատականներով ավարտել Երևանի մանկավարժական ուսումնարանը և հայրենի գյուղ վերադարձել, որպեսզի իրականացնի իր բազմապիսի ծրագրերը, մտահղացումները, երազները: Ընդամենը մեկ, երկու տարի աշխատեց նա հայրենի գյուղի դպրոցում, բայց արժանացավ մի քանի շնորհակալագրերի, գովասանագրերի և բոլոր գյուղացիների հարգանքին: Իսկ հիմա, ստիպված էր թողնել այդ բոլորը:

# ԱՎԱՐՏՎՈ՞ՒՄ Է, ԱՐԴՅՈՔ,

Այս պատմությունը ոչ ոք չի հորինել: Այն գրել է քսան տարեկան մի տղա իր կյանքի, արյան գնով: Իհարկե, եթե նա այսօր ողջ լիներ, թերևս զարմանար, որ իր մասին արդեն գիտեն բոլորը, որ ինքը Սովետական Միության հերոս է: Այո՛, կզարմանար, որովհետև նա կարծում էր, որ իր կյանքում հերոսական ոչինչ չըկա: Մի՞թե հերոսություն է հայրենիքը զավթիչներից պաշտպանելը: Իսկ նա շատ էր սիրում իր հայրենիքը, լեռների մեջ ծվարած գյուղը, որտեղ հեքիաթի պես գեղեցիկ էր ամեն ինչ: Այնտեղ նոր թխվող լավաշի բուրմունքն ու խոյի գլուխների քանդակներով լեցուն գերեզմանոց կար: Այնտեղ աստղազարդ գիշեր կար, որը լցվում էր գառների անհանգիստ մայունով ու ամպերի կապույտ քարավաններով: Քանի՜-քանի՜ ոսոխ այդ ամպերի պես սահել են Գնիշիկի վրայով, բայց նա միշտ աննվաճ է մնացել, ինչպես իր դիմաց հառ-

«Ոչինչ,— ճակատից գրում էր նա մորը,— վստահ եղիր, որ բարձր կպահեմ մեր լեռնային գյուղի և Հարսնասարի պատիվը, անպայման հաղթանակով կվերադառնամ»: Վահիկը կատարեց իր խոստումը: Նա իր մարտական ընկերների հետ պաշտպանեց Մոսկվան, Դոնը, Ուկրաինան, Բելոռուսիան, հետո ջախջախված թշնամու բեկորները դուրս շպըրտեց մեր երկրից, կռվելով հասավ Լեհաստան, Չեխոսլովակիա, Գեր-



# ՀԵՐՈՍԻ ԿՅԱՆՔԸ

մանիա: Ամենակատաղի մարտերը տեղի ունեցան հենց Գերմանիայում, որովհետև պարտված ոսոխը ոչ մի կերպ չէր ուզում հանձնվել: Նա դիմում էր ամեն տեսակ նողկալի միջոցների, միայն թե շատ կարմիրբանակային սպանվեր: Ահա այդպիսի մեքենայության զոհ գնաց Վահիկ Լևոնյանի գումարտակը: Նրանք անսպասելիորեն օղակման մեջ ընկան: Զինամթերքը քիչ էր, արագ սպառվեց: Չորս կողմից սուլում էին թշնամու նռնակներն ու հրանոթները: Պաշարման օղակը գնալով ավելի էր սեղմվում: Թվում էր, փրկության ոչ մի հույս չկա: Սակայն գումարտակի հրամանատարը՝ քսաներկուամյա Վահիկը չէր վհատվում: Նա ամենայն սառնասրտությամբ առաջ էր նետվում, օդում որսում սուլող թշնամու նռնակը, ետ շպրտում ֆաշիստական ջոկատների վրա: Հետո, երբ թշնամին ընդամենը մի քանի քայլի վրա էր, նա հրամայեց տղաներին հետևել իրեն և մոտեցող ոսոխի վրա նետվելով, ձեռնամարտի բռնվեց: Տղաները առանց ժամանակ կորցնելու, շտապեցին իրենց խիզախ հրամանատարի ետևից: Այս անսպասելի հարձակումից շփոթահար, ֆաշիստները մի պահ գլուխները կորցրին: Դրանից օգտվելով, Վահիկը ճեղքեց թշնամու խիտ օղակը և իր գումարտակը ողջ-առողջ դուրս բերեց պաշարումից: Դա կարծես քիչ էր: Ձեռնամարտի ժամանակ նա հրացանի խզակոթով չորս ֆաշիստի գլուխ ջախջախեց և երկու հոգու էլ գերի վերցրեց:



Սլուցկի պիոներները Վահիկ Լևոնյանի շիրմի մոտ

Վահիկենց ընտանիքից շատերը գնացին ճակատամարտ: Սակայն նրանք բոլորն էլ ընկան թշնամու գնդակից՝ հաղթանակի հույսը աչքերի մեջ պահած: Նրանցից միայն Վահիկին բախտ վիճակվեց ապրել հաղթանակի բերկրանքը, տեսնել, թե ինչպես է մեր դրոշը փողփողում Ռայխստագի վրա: Նա շտապեց նամակ գրել տուն, որպեսզի այդ մեծ ուրախությունը կիսի իր ամենասիրելի մարդու՝ մոր հետ:

«Մամա ջան, վերջապես հասանք Բեռլին, այն անիծված քաղաքը, որը այդքան տառապանք ու վիշտ բերեց մեր ժողովրդին»: Հարազատներն ու համագյուղացիները ուրախությունից չգիտեին ինչ անել: Նրանք արդեն պատրաստություն էին տեսնում իրենց քսաներկուամյա հերոսին արժանավայել դիմավորելու համար, երբ հեռագիրը գուժեց նրա մահը: Վահիկը զոհվել էր Բելոռուսիայում, մարտական շատ կարևոր հանձնարարություն կատարելու ժամանակ:

Թվում է, սրանով էլ ավարտվում է այս պատմությունը: Բայց մի՞թե հերոսների կյանքը ավարտվում է իրենց մահով: Հերոսները հենց այն մարդիկ են, որոնք իրենց վախճանից հետո անգամ կարողանում են ուժ և հավատ ներշնչել մարդկանց, ապրել նրանց հոգիներում: Այժմ Բելոռուսիայի Սլուցկ քաղաքում մի համեստ մահարձան կա, որի վրա գրված է. «1945 ԹՎԱԿԱՆԻՆ ԱՅՍՏԵՂ Է ԹԱՂՎԱԾ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԵՐՈՍ, ԱՎԱԳ ՍԵՐԺԱՆՏ ՎԱՀԻԿ ՀՄԱՅԱԿԻ ԼԵՎՈՆՅԱՆԸ՝ ԾՆՎԱԾ 1923 ԹՎԱԿԱՆԻՆ»:

Այս գերեզմանը միշտ խնամքով մաքրվում է ու զարդարվում ծա-





Գնիշիկի պիոներները Վահիկ Լևոնյանի արձանի մոտ:

դիկներով: Գրեթե ամեն օր նրան այցի են գալիս Սլուցկի № 3 դպրոցի «Արծվիկ» ջոկատի անդամները: Նրանք շիրիմը շրջապատող ծառերի տակ նստած զրուցում են, պատմում իրենց խոհերի, անելիքների մասին: Կարծես խորհրդակցում են ավագ ընկերոջ հետ: Այդ սովորությունը ծնվեց պատերազմից հետո և մինչև հիմա էլ շարունակվում է: Յուրաքանչյուր տարի վեցերորդ դասարանում սովորող աշակերտները դառնում են Սովետական Միության հերոս Վահիկ Լևոնյանի պատանի բարեկամները: Նրանք խնամում են հերոսի շիրիմը, հարստացնում դպրոցական թանգարանի նյութերը, որը նվիրված է հայազգի հերոսին: Պիոներների ջանքերով պարզվեց, որ Վահիկի հարազատները ողջ են, ապրում են Եղեգնաձորի շրջանի Գնիշիկ գյուղում: Իսկ հարազատները քսան տարի անց իմացան իրենց որդու գերեզմանի ճիշտ տեղը:

Այժմ մի անտեսանելի կամուրջ բելոռուսական Սլուցկ քաղաքը միացնում է լեռնային Գնիշիկ գյուղին: Այդ կամուրջը ստեղծել է Վահիկը: Կյանքում միմյանց չտեսած մարդիկ նրա միջոցով հարազատներ են դարձել և ամեն շաբաթ նամակով տեղեկացնում են իրար իրենց հաջողությունների, ծրագրերի մասին: Շուտով Սլուցկի պիոներները այցի կգան հերոսի ծննդավայրը, կտեսնեն գյուղի կենտրոնում վեր խոյացող Վահիկի արձանը և կհիանան Հայաստանի լեռներով: Հերոսի հարազատներն էլ կայցելեն իրենց որդու շիրմին, որը, ճիշտ է, հայրենի գյուղից հեռու է, բայց շրջապատված է հարազատներով ու սիրով:

Ամեն առավոտ, երբ արևը բարձրանում է Գնիշիկ գյուղի հանդիպակաց լեռան գագաթը, բացվում է Վահիկենց պապենական տան դուռը և բակ է դուրս գալիս մի փոքրիկ, սևաչ տղա: Նա անուշ ժպտում է արևի ճառագայթներին ու չորեքթաթ քայլում դեպի Վահիկի գրանիտե արձանը, որը հենց գյուղի կենտրոնում է, Հարսնասարի ճիշտ դիմաց: Այդ փոքրիկի անունն էլ է Վահիկ, նա հերոս Վահիկի եղբորորդին է: Նա աչքերը կկոցելով երկար նայում է հորեղբոր դեմքին, որի անունը կրում է ինքը և երևի զարմանում, որ հորեղբայրը չի ժպտում, նույնիսկ չի փորձում մոտենալ իրեն: Թերևս ավելի ուշ նա պիտի հասկանա, որ իր հորեղբայրը այդքան շուտ արձան դարձավ, որպեսզի իր աչքերում երբեք չխամրի արևի շողը, որպեսզի միշտ ճերմակ լինի թոնիրներից բարձրացող ծուխը ու անվտանգ՝ իր կյանքի ուղին:

Որպեսզի ինքը կարողանա իրականացնել այն բոլոր երազները, որ չհասցրեց իրականություն դարձնել քսաներկու տարեկանում հերոսացած Վահիկը:

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ

Լուսանկարները՝ Շ. ԳԱԼՍՏՅԱՆԻ






Պահպանվել է 1901 թվականի ապրիլի 22-ին Լենինի գրած նամակը: Այդ օրը Լենինը դառնում էր երեսունմեկ տարեկան: Իր ծննդյան օրը նա, առաջին անգամ, դիմավորում էր հայրենիքից հեռու՝ գերմանական Մյունխեն քաղաքում: Այստեղ նա թաքնվել էր ցարական ժանդարմներից:

Ի՞նչի մասին էր գրում Լենինն իր նամակում:

Ճամպրուկի մասին: Ամենասովորական մի ճամպրուկի: Գրում էր, որ ճամպրուկն անպայման պետք է ուղարկել Պսկով:

Երեք օր հետո ուղարկած նամակում, Լենինը նորից գրում էր ճամպրուկների մասին: Այդ մասին էր գրում նաև մեկ ամիս անց:

«Մենք ապրում ենք համարյա միայն ճամպրուկներով»,— գրում էր Լենինը: «Մեր կենսատու հացը, առաջվա նման, միայն ճամպրուկներն են...»

Ի՞նչ խորհրդավոր ճամպրուկներ էին դրանք: Եվ ինչո՞ւ, անգամ իր ծննդյան օրը, նրանք այդպես անհանգստացնում էին Լենինին:

Այդ նույն ժամանակ Պսկովում ապրում էր Լենինի ընկերը՝ հեղափոխական Պանտելեյմոն Նիկոլաևիչ Լեպեշինսկին:

Մի անգամ Լեպեշինսկին անդորրագիր ստացավ՝ պահպանման կայան հանձնված ճամպրուկի վերաբերյալ: Ճամպրուկը կարելի էր ստանալ Վիբորգ քաղաքի կայարանից, որը հարյուր կիլոմետր հեռու էր Պսկովից:

Հավանաբար այն մարդը, որ ճամպրուկը Պսկով պետք է հասցներ, վախեցել էր անցկացնել ֆինլանդական սահմանը և թողել էր Վիբորգում: Անդորրագիրը նա ուղարկել էր Լեպեշինսկուն:

Վիբորգն այն ժամանակ պատկանում էր Ֆինլանդիային: Ֆինլանդիան, իր հերթին, մտնում էր Ռուսաստանի կազմի մեջ, բայց նրանց միջև, այնուամենայնիվ, գոյություն ուներ սահման և, բնականաբար, ժանդարմներն այդտեղ ստուգում էին ճանապարհորդների իրերը:

Սակայն, ինչ գնով ուզում է լիներ, ճամպրուկը հարկավոր էր վերցնել: Լեպեշինսկին հիանալի գիտեր, թե ի՜նչ կարևոր բեռ կա այդ ճամպրուկում:

Ճամպրուկը ստանալու մեկնեց Լեպեշինսկու կինը՝ Օլգան: Նա բարեհաջող հասավ Վիբորգ, ստացավ բավական ծանր ճամպրուկը, բացեց և մի րոպե շվարեց. ճամպրուկը դատարկ էր:

Նրան բնավ չզարմացրեց ճամպրուկի դատարկ լինելը, քանի որ գիտեր, թե գաղտնի իրը տեսանելի տեղ չեն դնում:

Բայց դատարկ ճամպրուկն ինչպե՞ս անցկացնել սահմանը — ահա թե ինչն էր մտահոգում Օլգային: Ճամպրուկը դատարկ էր, բայց ծանր: Ժանդարմներն իսկույն գլխի կընկնեին, որ այստեղ մի բան կա:

Ինչպե՞ս ինքը նախօրոք չմտածեց այդ մասին:

Ի՞նչ անել հիմա:

Օլգան ուզեց վազել խանութ և գնել ինչ-որ իրեր, թեկուզ զգեստներ, սպիտակեղեն և դրանցով լցնել ճամպրուկը: Բայց իսկույն ևեթ կանգ առավ, քանի որ շատ քիչ դրամ ուներ մոտը: Նույնիսկ մեկ զգեստ չէր կարող գնել դրանով:

Ի՞նչ անել: Ճամպրուկը թողնել Վիբորգո՞ւմ:

Օլգան շփոթված նստել էր կայարանում դրված նստարանին: Եվ հանկարծ... հիանալի մի միտք ծագեց նրա գլխում:

Նույն օրը, իրերը ստուգող ժանդարմին մոտեցավ մի երիտասարդ կին: Մի ձեռքով կինը բռնել էր ճամպրուկը, իսկ մյուսով՝ ոլորած քաղցրահացը: Վիբորգը հայտնի էր թխվածքի այդ տեսակով: Այդ ոլո-

---

Սկիզբը՝ «Պիոներ» № 1։

րած քաղցրահացերը նույնիսկ «վիբորգյան» էին կոչվում:

Կինն ախորժակով կրծոտում էր թխվածքը: Նա անփութորեն բացեց ճամպրուկն ու կարծես ամաչելով իր բեռի չնչինությունից՝ ասաց.

— Առանձնապես ոչինչ չկա, ինչպես տեսնում եք...

Ճամպրուկը լիքն էր Վիբորգյան ոլորած քաղցրահացերով:

Մի րոպե ժանդարմն ապշած մեկ թխվածքին էր նայում, մեկ էլ Օլգային: Այդ րոպեն այնքա՜ն երկար թվաց Օլգային:

Այնուհետև ժանդարմը թոթվեց ուսերն ու գլխով նշան արեց: Կարելի էր գնալ, ամեն ինչ կարգին էր:

Օլգան թեթևացած շունչ քաշեց:

Շուտով ճամպրուկը Լեպեշինսկիների ս,ակովյան բնակարանումն էր: Նրանք խնամքով պոկում էին ճամպրուկի պատերը, կոտրում հատակը: Պատերի արանքում թաքցված էին ամուր միակցված, բարակ թղթերի ծանր կապոցներ:

Դա «Իսկրա» հեղափոխական թերթն էր:

Թերթը հրատարակում էր Լենինը:

«Իսկրան» պատմում էր, թե ինչ ծանր դ, ւթյան մեջ էին ապրում բանվորներն ու գյուղացիները Ռուսաստանում, ինչպես էին նրանք շահագործվում կապիտալիստների ու կալվածատերերի կողմից:

«Իսկրան» աշխատավորներին կոչ էր անում պայքարել ցարի դեմ: Նա բացատրում էր նաև պայքարի միջոցները:

«Իսկրան» հրատարակվում էր արտասահմանում և գաղտնի ուղարկվում Ռուսաստան, որտեղ էլ Լենինի ընկերներն ու կինակիցները տարածում էին ամբողջ երկրով մեկ:

Ահա թե ի՛նչ ճամպրուկների մասին էր գրում Լենինը: Ահա թե ինչի մասին էր մտահոգված նա իր ծննդյան օրը՝ գերմանական Մյունխեն քաղաքում:

*(Շարունակելի)*

Նկ. ՎԱՋԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ



# Լ Ե Ն Ի Ն



ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Մենք դեռ անհոգ փոքրիկներ,
Դու մեզ հետ ես խաղացել,
Հետո բռնել ձեռքը մեր,
Մանկապարտեզ ուղեկցել:



ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿ

Ասում են, թե մի ժամանակ,
Ինչքա՞ն առաջ՝ ի՞նչ իմանաք,
Եղբայրներ են եղել հսկա մեր լեռները,
Զարթնել են շուտ,
Ելել ոտի,
Նախ կապել են իրենց գոտին,
Լվացել են պաղ ամպերում
Իրենց երեսն ու ձեռները,
Հետո միայն «բարի լույս» են իրար ասել
Եվ իրարից «բարի լույս» են սիրով լսել:
Եվ միշտ այսպես,
Ու ճիշտ այսպես,
Շուտ են զարթնել, ելել ոտի,
Նախ կապել են իրենց գոտին,
Հետո միայն բարև ասել,
Բարև լսել:

Անց է կենում շատ ժամանակ,
Ինչքա՞ն արդյոք՝ ի՞նչ իմանաք,
Եղբայրները ծերանում են
Ու մի օր էլ շատ են քնում,
Շատ են քնում— ուշ վեր կենում:
Եվ ի՞նչ... հանկարծ մոռանում են





Դու միշտ մեզ հետ ես եղել,
Եղել մեր դասն առաջին,
Մեր թռթովանքն ես ուղղել
Ու ժպտացել այնքան ջինջ:

Մեր գրքերից, տետրերից
Հետևել ես մեզ անվերջ,
Տվել ես միտք մեզ խորին,
Եվ ապրելու հազար տենչ:

Ու մենք հաստատ, աներեր,
Ցուցումներով քո ձեռքի,
Ընթացել ենք սարն ի վեր,
Դեպի լույսը բարձունքի:

Դու հաղթության ծիածան,
Կամար կապած մեր հոգում,
Դու հորիզոն մեր պայծառ,
Մեր բախտի աստղ հուրհրան:

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



# ԼԵՌՆԵՐԸ

Նախ և առաջ կապել գոտին.
Առանց գոտու ելնում ոտի,
«Բարի լույս» են իրար ասում,
Բայց... իրար ձայն է՜լ չեն լսում.
Եղբայրները քարանում են,
Դառնում լեռներ հազար ու բյուր,
Նրանց աչքի արցունքները՝
Հազար աղբյուր,
Նրանց մեջքի գոտիները՝
Դաշտ ծաղկաթույր...

...Ով ուզում է չքարանա,
Պիտի որ նա չմոռանա
Զարթնել շատ շուտ,
Ելնել ոտի,
Մեջքին կապել ամուր գոտի,
Այսինքն՝ միշտ գոտեպնդվել
Ու եղբորը գոտեպնդել...



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# ՄԻ ԼԱՎ ԵՐԵԿՈ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Փոքրամարմին է, նիհար. ընդհանրապես նուրբ: Ֆիզիկական, պատրաստականության դասերին կանգնում է շարքի ամենավերջը. երբ շարքը ետ է դառնում, Արմենը լինում է ամենաառջևում և շփոթվում է, շփոթում է հրահանգները, և տղաներն ու աղջիկները ծիծաղում են: Հիմա Արմենը քայլում է Սեթի հետ: Նրանք մտերիմներ են: Սեթը ասում է նրան.

— Դու պիտի ասես՝ Սեթը այդ բանից տեղյակ չէ, ես նրա հետ եմ եղել: Լսո՞ւմ ես, դու ինձ հետ ես եղել, և ես այդ բանից տեղյակ չեմ: Վերջապես ճի՞շտ է, որ դու ինձ հետ ես եղել:

— Ճիշտ է,— ասում է Արմենը և էլի ինչ-որ բան է ուզում ասել, սակայն Սեթը առարկություն չընդունող շեշտով ասում է.

— Դու ինձ պիտի պաշտպանես: Վերջապես մենք մտերիմնե՞ր ենք, թե՞ ոչ:

Ապրիլյան պայծառ օր է: Նրանք գնում են դպրոց: Փողոցում մարդկանց ու մեքենաների եռուզեռ է:

— Ճիշտ է, դու իմ ընկերն ես,— ասում է Սեթը,— բայց բոլորը քեզ համարում են ազնիվ մարդ: Դե, տե՛ս, ճստի՛կ, ինձ անհարմար վիճակի մեջ չդնես:

Սեթը դասարանում ամենաբարձրահասակն է, թիկնեղ, ընդհանրապես ուժեղ կազմվածքով: Եվ ինչ-որ սրտառուչ բան կա այդ երկու տղաների մտերմության մեջ: Սեթը միշտ պաշտպանում է Արմենին ավելի ուժեղ տղաների հարձակումներից, Սեթը ամեն տեղ մի տեսակ հովանավորում է Արմենին: Եվ թե ինչո՞ւ է Սեթը մտերիմ Արմենին, ոչ ոք չի կարող ասել: Գուցե այդ մտերմությունը հաճելի է նրան հենց նրա համար, որ բոլորը դրանում տեսնում են ինչ-որ սրտառուչ բան: Իրականում այդ մասին դասարանի տղաների և աղջիկների միջև որևէ խոսակցություն չի եղել: Եվ բոլորն էլ այդ մտերմությունը ընդունում են ինչպես որ կա: Նրանք հասան դպրոց, և Սեթն ասաց.

— Այսպես, ճստի՛կ, այսօր իմ ամբողջ հույսը դու ես:

Իսկապես, այսօր Սեթի համար առիթ էր ներկայանում ստուգելու իր ընկերոջ նվիրվածությունը. անցած կիրակի օրը դասարանը գնացել էր Աղվերան, դահուկային արշավի: Ճանապարհին Սեթի դահուկը կոտրվեց, և Սեթն ու Արմենը խմբից ետ մնացին: Տղաները բավական հեռու էին, և այդ մասին ոչ ոք չիմացավ: Իսկ այստեղ նրանց մոտով անցավ հարևան դասարանից մի տղա: Եվ Սեթը մտածեց... «Սեթ», փորձեց միջամտել Արմենը, սակայն Սեթը բղավեց նրա վրա. «Մեկանից ավագը ո՞վ է»: Իսկ երբ նրանք հեռանում էին, Սեթն ասում էր նրան. «Այսպիսի դեպքերում դու իմ գործերին մի՛ խառնվիր: Ես գիտեմ, թե ինչ եմ անում»: Այս դեպքի մասին դպրոցում իմացան հետևյալ օրը, և ահա, այսօր ջոկատի նիստ է լինելու:

— Սե՛թ,— հենց դպրոցի դռների մոտ ասաց Արմենը,— և նրանք կանգ առան,— Սե՛թ,— ասաց Արմենը,— դու ինձ անկեղծորեն ասա՛, այդ տղայի հետ դու ազնի՞վ վարվեցիր:

Սեթն ուզում էր պատասխանել, Արմենը ընդհատեց նրան.

— Սպասի՛ր, Սե՛թ, հապա մտածի՛ր, լավ մտածիր և հետո ասա:

— Ես քեզ ասել եմ, այսպիսի դեպքերում դու իմ գործերին մի՛ խառնվիր: Մենք ընկերներ ենք, և մեկանից ամեն մեկը պետք է լավ ճանաչի իր իրավունքները:

Տղաներն ու աղջիկները բոլորն էլ արդեն դասարանում էին, և ջոկատավար Արմանը սկսեց հավաքը:

— Սեթը վարվել է անթույլատրելի,— ասաց Արմանը,— թե ինչ է արել Սեթը, ձեզ բոլորիդ հայտնի է:

— Դո՛ւ, Սե՛թ, վարվել ես անմարդկային,— ասաց Աշոտը,— քո արարքը ապացուցում է, որ դու եսասեր ես:

— Սե՛թ,— ասաց Սիրանը,— դու արատավորում ես մեր ջոկատի պատիվը և պիոների կոչումը:

Սեթը զգում էր. նրանք՝ իր ընկերները հիմա բոլորն էլ մտածում են, թե ինչպիսի բառերով կշտամբեն իրեն: Սեթը հիշում էր՝ նրանցից համարյա յուրաքանչյուրին ինքը երբևէ վիրավորել կամ նեղացրել է: «Հիմա նրանք բոլորն էլ, իհարկե, պատրաստ են առիթից օգտվել և վրեժխնդիր լինել ինձանից»,— մտածում էր Սեթը:

— Իսկ դուք բոլորդ կարծում եք, թե ես մեղավո՞ր եմ,— հանկարծ ոտքի ելնելով ասաց նա:

— Հապա ինչպե՞ս,— ասաց ջոկատավար Արմանը:

— Դուք հավատում եք այն ամենին, ինչ ասել է այդ տղան, որի ոտքից ես իբր հանել եմ դահուկը և նրան թողել եմ երթուղում, առանց դահուկի:

— Հապա ինչպե՞ս,— հարցրեց ջոկատավար Արմանը:

— Դուք հավատացե՛ք ինձ, ինչո՞ւ դուք ինձ չեք հավատում և նրան եք հավատում,— ասաց Սեթը:— Լավ, ասենք, ես ստում եմ, Արմենը հո ինձ հե՞տ է եղել, դուք ինչո՞ւ նրան չեք հավատում, դուք գիտեք, որ նա չի ստի:

Դասարանում լռեցին:

— Արմենը իսկապես նրա հետ է եղել,— ասաց Լևոնը:

— Տղանե՛ր,— ասաց Կարենը,— մենք մեղադրում ենք Սեթին, իբր թե նա ընկերասեր չէ: Բայց նա ընկերություն անո՞ւմ է Արմենի հետ: Անում է: Եվ Արմենի համար վատ ընկեր չէ, բոլորդ գիտեք:

— Արմե՛ն,— ասաց ջոկատավար Արմանը,— հապա եկ այստե՛ղ:

Արմենը նստած էր գլուխը կախ և զգում էր, որ բոլոր տղաների ու աղջիկների հայացքը իր վրա է, և շփոթությունից ամաչում էր նայել շուրջը: Այդպես էլ գլխահակ նա մոտեցավ սեղանին:

— Թո՛ղ եղունգներդ կրծելը,— ասաց ջոկատավարը:

Արմենը ձեռքերը վար իջեցրեց և ապա մեղավոր նայեց դասարանին, կարծես նախապես ներողություն խնդրելով այն ամենի համար, ինչ ասելու էր:

— Նա, միևնույն է, ընկե՛ր Արման,— ասաց Վանուշը,— նա, միևնույն է, ճշմարիտը չի ասի, նա վախենում է Սեթից, և հետո նրանք մտերիմներ են և նա Սեթին չի մատնի:

— Լռեցե՛ք, տղանե՛ր,— ասաց Արմանը,— թողե՛ք նա իր խոսքն ասի: Խոսի՛ր, Արմե՛ն:

Արմենը խղճալի հայացքով նայեց ջոկատավարին: Մինչ այդ պահը նրան թվում էր, թե շուրջը խոսում էին ամենևին իրեն չվերաբերող բաների մասին, բայց ահա հանկարծ նրան ասում էին՝ Արմեն, խոսիր: Նա խղճալի հայացքով նայում էր ընկերներին, և նրանց մեջ նա հատկապես տեսավ Սեթի վստահ, ինքնագոհ հայացքը, և այստեղ Արմենը մեկ էլ մոռացավ, թե որտեղ է գտնվում ինքը, թե որտեղ է կանգնած, թե ջոկատի բոլոր քսանութ տղաներն ու աղջիկները նայում են իրեն: Եվ նույնիսկ ջոկատավար Արմանին մոռացավ: Այդ մի քանի վայրկյանում նա տեսնում էր Սեթի այնքան ծանոթ և մտերիմ դեմքը և խոսում էր միայն նրա հետ.

— Դո՛ւ, Սե՛թ, ստում ես, ես, այո՛, քեզ հետ էի, ես փորձեցի արգելել, բայց դու չլսեցիր ինձ, ես դրա համար ոչինչ չեմ ասում, դա քո գործն է՝ ինձ լսել կամ չլսել, ես ափսոսում եմ միայն, որ դու ճիշտը չես ասում, դու այդ տղայի ոտքից դահուկը հանեցիր:

Ծափահարում էին: «Կեցցե՛ս, Արմեն, կեցցե՛ս, ճստիկ, ա՛յ, թե համարձակն է եղել նա»,— բոլոր կողմերից բղավում էին աղջիկներն ու տղաները: Արմենը ուրիշ ասելիք չուներ, նա անցավ նստարանների արանքով և, ուրիշ ազատ տեղ չգտնելով, նստեց իր տեղը, հենց Սեթի կողքին:

Սեթին խիստ նկատողություն արեցին: Խոսեցին նաև ուրիշ տղաներ ու աղջիկներ, և Սեթին ասացին, որ իրենք չէին ցանկանա իրենց մեջ ունենալ այդպիսի ընկեր և որ Սեթը պետք է լավ խորհի իր վարքի մասին, և ընդհանրապես քննադատող աչքով նայի իրեն:



Դասարանից դուրս եկան արդեն մթնշաղին: Սեթը աստիճաններով ցած վազեց, ամենից առաջ ինքը դուրս եկավ դպրոցից. չէր ցանկանում որևէ մեկի հետ խոսել: Նա զգում էր՝ այնտեղ դասարանում, իր այդ բոլոր քսանութ ընկերների մեջ հիմա չկար իրեն համակրող ոչ մեկը: Նա զգում էր, որ այլևս այդ դասարանում ինքը չի կարող հուսալ, թե որևէ մեկը իրեն կընդունի որպես ընկեր և իր հետ ոչ ոք բարեկամություն չի անի: «Ես այլևս այդ դասարանը չեմ մտնի»,— հենց այստեղ վճռեց նա: Ետևից ինչ-որ մեկը գալիս էր: Այդ մեկը հավասարվեց նրան և քայլում էր կողքից: Նա հասկացավ, թե ով էր:

— Մոտիցս ցանվի՛ր,— ասաց նա:

— Դու ի՛նքդ կարող ես ցանվել,— ասաց Արմենը:



Սեթին նույնիսկ ծիծաղելի թվաց այդ փոքրիկ տղայի համարձակությունը, մանավանդ, որ նա առաջին անգամն էր նրան այդպես խանդոտ տեսնում, և նա խնդաց.

— Թե չէ՝ դու ի՞նչ կանես:

— Թե չէ, կհասցնեմ մռութիդ,— ասաց Արմենը, և Սեթը չկարողացավ զսպել ծիծաղը, նա իսկապես լըրջացավ և նույնիսկ մռայլվեց:

— Դու, իհարկե, հիմա չես ցանկանա ունենալ ինձ պես ընկեր,— ասաց Արմենը:

— Փաստ է:

— Քեզ մատնիչ ընկեր պետք չէ,— ասաց Արմենը:

— Պետք չէ:

— Դե, լսի՛ր,— ասաց Արմենը,— ես հենց դրա համար եկա քո ետևից, որպեսզի քեզ ասեմ. իսկ ինձ ստախոս ընկեր պետք չէ, հասկանո՞ւմ ես, ստախոս ընկեր, և ընդհանրապես ո՞ւմ է հարկավոր այդպիսի ընկեր: Եվ դու որևէ ստախոսի քեզ ընկեր կհամարեի՞ր:

Եվ Արմենը ետ դարձավ: Նա փոքրամարմին էր, վտիտ, սակայն քայլում էր արագ, և Սեթին հարկ եղավ համարյա վազել՝ նրա ետևից հասնելու համար. «Արմե՛ն,— ցանկանում էր ասել նա այդ տղային,— Արմե՛ն, լսի՛ր», և ցանկանում էր ասել, որ իսկապես ոչ մի վատ բան չէր եղել, մինչդեռ կարող էր լինել ամենավատը, Արմենը այնտեղ հավաքում, կարող էր ստել, և հիմա իրենք բարեկամաբար կքայլեին կողք-կողքի, կարծես հաշտ, և, սակայն, Սեթը արդեն այդ փոքրամարմին տղայի մասին կմտածեր. «Նա ստախոս է, նա կարող է սուտ խոսել»: Սեթին, կարծում եք, Արմենի մեջ հատկապես ի՞նչն է ամենից ավելի դուր գալիս: Սեթը, կարծում եք, ինչո՞ւ է հատկապես հենց նրա հետ ընկեր: Հենց նրա համար, որ նա երբեք չի կարող ստել: Սեթը հիմա, իսկապես, քանությ հոգու միջից կորցրած կլիներ իր ամենալավ ընկերոջը, բայց այդ չի եղել:

— Սպասի՛ր,— Սեթը բղավեց նրա ետևից:

Արմենը նայում էր նրա աչքերին, մոտիկից, համարյա աչք-աչքի, քիթ-քթի: «Հիմա նա ի՞նչ կարող է ասել»,— մտածում էր Արմենը և ուզում էր հավատալ, որ նա որևէ բան հասկացել է:

— Ես այսօր կարող էի կորցնել իմ ամենալավ ընկերոջը, բայց այդպես չեղավ: Ես ուրախ եմ, Արմե՛ն,— ասաց Սեթը:

Արմենը, խնդուն, գլխի շարժումով հաստատեց նրա խոսքերը, նրանք իրար հրաժեշտ տվին, ձեռք-ձեռքի ամուր կարկելով, և առաջ հակված կարմիր վզկապները քամուն տված, վազեցին դեպի փողոցի հակառակ կողմերը:

Փողոցում արդեն վառվել էին լույսերը, արդեն սկսվել էր երեկոյան եռուզեռը, ցերեկը եկած անձրևից հետո փողոցում ապրիլյան օդը մաքուր ու թարմ էր: Լավ երեկո էր:

---

# ԶԻՆՎՈՐ ԽՈՍՐՈՎԸ

*ԱՐԱՄԱՅԻՍ ՍԱՀԱԿՅԱՆ*

Երբ որ հարձակվեց
Մեր դեմ ոսոխը,
Պատերազմ մեկնեց
Զինվոր Խոսրովը:

Թողած իր որդուն,
Իր տունն ու հողը,
Խփե՜ց թշնամուն
Զինվոր Խոսրովը:

Կինը տեսավ,
Վոլգա՜ն, Սև ծո՛վը
Ու Բեռլին հասավ
Զինվոր Խոսրովը:

Լսեց, որ որդուն
Տարել է մահը...
Մղկտա՜ց անքուն՝
Զինվոր Խոսրովը:

Գրոհի ելավ,
Իսկ մյուս օրը
Մի մանուկ տեսավ
Զինվոր Խոսրովը:

Սարսռաց, կանգնեց,
Զսպեց հույզերը,
Ո՛չ... չկրակեց
Զինվոր Խոսրովը:

Հաց տվեց նրան,
Շոյեց վարսերը,
Եվ... գրկեց նրան
Զինվոր Խոսրովը:

Տոնեց հաղթական
Մայիսյան օրը՝
Քաջ ու առնական
Զինվոր Խոսրովը:

# Ե՞ՐԲ Է ՈՐՍՈՐԴԸ ԱՄՈԹԻՑ ՔՐՏՆՈՒՄ

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*



Իրավաբան Արամ Եսայանը որսի վայրում սիրում էր ընկերների «հոգու հետ խաղալ»:

Մի անգամ, դաշտ հասնելուն պես, մեր ավագ ընկեր Միսաք Ավագյանը մի նապաստակ խփեց ու թաքցրեց թփի տակ, որ վերադարձին վերցնի:

— Հոգու հետ չխաղա՞նք,— աչքով արավ Արամ Միխայլովիչը:

Խոսքը մեր չորրորդ ընկերոջ՝ Սողոմոնի մասին էր: Լուռ համաձայնվեցինք: Նապաստակը հանեց թաքստոցից, մի կտոր թղթի վրա ինչ-որ բան գրեց, փաթաթեց, մտցրեց կենդանու ականջի խորքըն ու առաջ գնացինք: Սողոմոնը մեկնից հեռու էր ու անտեղյակ այդ դավադրությանը:

Երեկոյան դեմ այդտեղով անցնելիս նկատեցինք, որ Սողոմոնի շունը գնում է դեպի թաքցված նապաստակը: Իրար աչքով արինք, հեռացանք, ցրիվ եկանք ու թփերի հետևից գաղտագողի հետևում էինք: Սողոմոնս էլ հրացանն առաջ մեկնած, մատը ձգանին, ամբողջովին ուշադրություն դարձած՝ առաջ է գնում. շան վարքից կգում է, որ դիմացը որս կա թաքնված: Շունը հասավ սպանված նապաստակին, դուրս քաշեց թաքստոցից, մի կողմ դրեց ու հարցական նայում է տիրոջը, թե սա ի՞նչ բան է: Սողոմոնը չորս կողմը նայեց, տեսավ չենք երևում, ետ-ետ գնաց ու կրակեց վաղուց սատկած կենդանու վրա... Հետո տեսանք, որ ուրախ-ուրախ վազում է դեպի իր որսը: Մենք նույնպես շտապեցինք «դեպքի վայրը», շնորհավորեցինք, դերասանի կեղծ ուրախություն ցույց տվինք:



*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*

Միսաք Իվանիչը, իբր թե միամըտաբար, կենդանու ականջներից վեր բարձրացրեց, հիացավ նրա «լխտիկ բոյով» ու հանկարծ ասաց.

— Սողոմո՛ն, ականջները սառըն են... Նոր չսպանեցի՞ր, էս ի՞նչ շուտ սառավ...

Մոտեցանք, «միամտաբար» շոշափեցինք կենդանուն. ձմռան սառնամանիքից փայտացել էր:

— Ախր նոն-նոր խփեցի,— կմկմաց Սողոմոնը:

Շուռումուռ ենք տալիս կենդանուն, կասկածանքով օրորում ենք գլուխներս, իսկ Սողոմոնը քրտնել է անհարմարությունից:

Մտքումս ես այն կարծիքին էի, որ այդքանն էլ բավական է մեր ընկերոջը դաս տալու համար, բայց Արամ Միխայլովիչը այդպիսի գործերը կիսատ թողնողը չէր. նա մատը խոթեց նապաստակի ականջը, թե՝

— Էն ի՞նչ թուղթ է, սպասեցեք մի հանեմ...

— Վա՜հ,— միաբերան կարմացանք մենք, իբր թե ոչնչից տեղյակ չենք:

Այդ անիրավը ճմռած թուղթը բացեց ու առանց խնայելու բարձրաձայն կարդաց.

«Սողոմոն եղբայր, ախր ես վաղուց եմ սպանված, էլ ինչու՞ ես կրակում ինձ վրա, բա ես մեղք չե՞մ...»

Ծիծաղ, ի՜նչ ծիծաղ:

Սառնամանիք էր, բայց Սողոմոնս քրտնել էր և գոլորշի էր բարձրանում նրա թաց գլխից...



## ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆԻ ԱՆՏԻՊ ԷՋԵՐԻՑ

Վարպետի անտիպ այս գրառումները նրա ձեռագրերից արտագրել և մեզ է տրամադրել մեծ բանաստեղծի եղբոր որդին՝ Աբաս Իսահակյանը, որի համար և շնորհակալություն ենք հայտնում նրան: Սրանք Վարպետի լսած կամ տեսած այն դեպքերից են, որոնք տպավորություն են գործել նրա վրա և հավանաբար նա որոշած է եղել հետագայում անդրադառնալ դրանց, վերաիմաստավորելով կերտել չափածո կամ արձակ նոր գողտրիկ գործեր... Սակայն չի հասցրել անել:

### ԵՐԱԽՏԱԳԵՏ ԷՇԸ

Բժիշկ Վահրամ Մարտիկյանը հետևյալը պատմեց.

— Մեր թաղամասում, կատիլիայի մեջ, մի մարդ կա՝ կրթված, բարի և պարզացած: Մեկ անգամ նա տեսնում է մի լքված, հիվանդ, նիհար, խեղճ էշ: Տերը դուրս էր արել, որ ինքնիրեն սատկի, ու սա դեգերում էր անտեր, անտիրական:

Այդ մարդը խղճում է նրան, տանում իր տունը, խնամում, լավ կերակրում, մաքրում, և էշը առողջանում է, գեղեցկանում:

Զարմանալին այն է, որ ամեն անգամ, հենց պարոնը պարտեզ է մտնում, էշը, եթե պարտեզում պառկած է լինում՝ ոտի է կանգնում:

Աթենքի թերթերը գրեցին սրա մասին, և բժիշկը ինքը աչքով տեսել է այդ փաստը:

### ԿԱՂ ՃՆՃՂՈՒԿԸ

Մեր պատշգամբը, երեք տարի շարունակ, գարուն և ձմեռ, մի ճնճղուկ էր գալիս: Կինս կերակրում էր նրան և ուրիշ ճնճղուկների:

Սրա մի ոտքը կաղ էր, վնասված, բայց սա էր ճնճղուկների առաջնորդը: Մինչև նա չէր գալիս, մյուսները չէին մոտենում:

## Գ Ո Մ Ե Շ Ն

ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ

*Մեր գյուղում կար մի գոմեշ, անունը՝ Սեյրան:*

*Փղի չափ խոշոր էր, վիզը՝ հաստ, կոտոշները՝ կեռ, ճակատը՝ չալ: Շատ գեղեցիկ էր:*

*Ձայնը այնքան բարձր էր և դուրեկան, որ երբ կանչում էր գյուղամերձ արոտներից, մենք՝ երեխաներս, իրար ասում էինք.*

*— Մանասերի Սեյրանն՚է կանչում:*

*Մեր երկրում կար հնուց մնացած մի սովորույթ. ամեն տարի գարնանը իրար հետ պիտի կովեին գյուղի երկու ամենաուժեղ գոմշացուլերը: Հաղթողը դառնում էր «գեղի կովան»: Մեր ժամանակի խոսքով ասած՝ գոմշակովի չեմպիոն:*

*«Գեղի կովանն» ազատվում էր ամեն տեսակի լծից և իր համար ազատ արածում էր հանդերում:*

*Սեյրանը հինգ տարի իրար վրա հաղթել էր բոլոր գոմշացուլերին ու դարձել ամբողջ գյուղի, ամենից առաջ մեր թաղի, պարծանքը: Մյուս*



*թաղերի երեխաները մեզ նախանձում էին: Մենք նրանց առաջ քթներս բարձր էինք պահում.*

*— Գեղի կովանը հո՞ մեր թաղից է:*

*Կովան գոմեշները լինում են չար, հարու տվող:*

*Մեր Սեյրանը բարի էր: Հարու չէր տալիս ո՛չ մարդկանց, ո՛չ անասուններին, ո՛չ էլ շներին: Երբ նա չալ ճակատը բարձր պահած, ողորկ ու գեր ազդրերը շողշողացնելով հանդից վերադառնում էր տուն, մենք, երեխաներն ու շները, իրար խառնված, աղմկելով, թռչկոտում էինք Սեյրանի ետևից.*

*— Գեղի կովանը եկա՜վ...*

*Սեյրանը թույլ էր տալիս, որ մենք մոտենանք, ձեռքներս տանք իր պինդ կոտոշներին, շոյենք հաստ ու մկանուտ վիզը: Իսկ շները ուրախ հաչոցներով նրան ողջունում էին և գզվռտոցի խաղում ուղղակի նրա քթի տակ:*

*Մի անգամ ուշ աշնանը, երբ Մանասերի բարդու ծայրին դողդողում էր վերջին տերևը, արևմտոցի ժամանակ, Սեյրանը քառատրոփ գյուղ մըտավ և սկսեց կատաղած պտտվել տիրոջ դարբասի առաջ:*

*— Տղե՛րք, էս ի՞նչ է...— ձայն տվին երեխաները:*

*Ամբողջ գյուղը հավաքվեց Մանասերի դռան մոտ՝ տեսնելու չտեսնըված ու չլսված մի բան: Սեյրանի վզից կախված էր նիհար, մոխրագույն*

# Ո.Ի. ԳԱՅԼԵՐԸ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

մի գայլ: Այո՛: Գայլը կախված էր ուղղակի գոմշի վզից:

— Ա՛յ ժողովուրդ, էս ո՞նց է եղել,— հարցնում էին իրար գյուղացիներն ամեն կողմից:

— Քավո՛ր Մանասեր, էսիկ վատ նշան է...

— Պատերազմ կլինի...



Դժվար էր Սեյրանի վզից գայլին պոկել: Անասունը ցավից ու բարկությունից պտտվում էր տեղում և չէր թողնում, որ մարդիկ իրեն մոտենան: Վերջապես պարաններով կապկպեցին. գոմեշն անշարժացավ և թույլ տվեց, որ գայլին սատկացնեն և նրա ժանիքները դուրս հանեն գոմեշի թանձր, արնաթաթախ կաշվից:

Այդ ժամանակ, մի ուրիշ սատկած գայլ շալակին, վրա հասավ Մանասերի կրտսեր տղան, որ վայելում էր Սեյրանին արածացնելու պատիվը:

— Էս ո՞նց եղավ, ա՛յ Յոլակ,— ամեն կողմից հարցրին զարմանքից քար կտրած գյուղացիները:

Յոլակը սատկած գայլը ցած նետեց, թևքով ճակատի քրտինքը սրբեց ու պատմեց եղելությունը:

Գոմեշը կուշտ արածելուց հետո նստում է կաղնու ստվերում և սկըսում է հանգիստ որոճալ: Յոլակն էլ մտնում է անտառ մասուր քաղելու: Հանկարծ լսում է ինչ-որ գազանային կլանչոց, վազեվազ ետ է գալիս և ի՞նչ է տեսնում. Սեյրանը գայլերից մեկի փորը թափել ու սեղմել է ոտքի տակ, իսկ մյուս գայլը կախվել է գոմշի վզից: Ատամները խրել է մսի մեջ, ո՛չ կարողանում է միսը պոկել, ո՛չ էլ իր ատամներն ազատել այդ գերությունից: Ինչքան տղան կաղնի մահակով խփում է գազանի գլխին, բան դուրս չի գալիս: Գոմեշը, ցավին չդիմանալով, վազում է դեպի գյուղ: Յոլակն էլ սատկած գայլը շալակում ու հետևում է նրան:

Այս պատմությունը լսելուց հետո, քեռի Մանասերը հեղինակավոր ձայնով ասաց.

— Գայլերը խիստ քաղցած են եղել: Թե չէ, ո՞նց երկուսով սիրտ կանեին ատամի տակ առնել էս ապառաժը:



Այս բացատրությունը բոլորն էլ գտան խելքի մոտ, հանգստացան ու ցրվեցին տները:

Բայց մեր Սեյրանի բնավորությունը այդ անսովոր դեպքից հետո փոխվեց: Նա դարձավ շատ կռվարար և, մի տեսակ, շնատյաց: Այդ աշնանը նա երկու շան փոր թափեց, և դրանից հետո շները նրան տեսնելիս փախչում բարձրանում էին կտուրները:

Մենք՝ երեխաներս էլ, առաջվա նման չէինք համարձակվում մոտենալ մեր փառապանծ բարեկամին և շոյել նրա կեռ ու սիրուն կոտոշները: Սեյրանը բարկացել էր նաև մեզ վրա:

Սնունդը՝ հացի մանրուք, պատըշգամբը գցելուց քիչ հետո, երբ մենք ներս էինք մտնում, մեկ էլ, դարան մտած մի անկյունից, ծառի մի ճյուղից, գալիս էր կաղը և ապա մյուսները:

Այս տարի հունվարի մեջ խիստ ցրտեր եղան և առաջնորդը չեկավ, ճնճղուկները վախվխելով, ուշացած՝ գալիս էին, ուտում, գնում:

Անցան օրեր, և կաղ ճնճղուկը չեկավ ու չեկավ: Նշանակում է, նա չկար այլևս այս աշխարհում, մեռել էր, ո՞վ գիտե, ո՞ր պատի տակ սառել, ընկել անտեր, անտերունչ, քաղցած...



Ն.-ն պատմում է, թե իր քեռիներից մեկը՝ մանուկ հասակում տեսնում է, որ ծտերը թռչում են, մտածում է, թե ինքը ինչո՞ւ չպիտի կարողանա թռչել, և ցածր պատից թռչում է, ոտքը կոտրում:

Հետագայում, երբ նա մի սխալ գործ էր բռնում, մայրը մեծացած որդու երեսովն էր տալիս.

— Դու էն չե՞ս, որ ծտի խելք էլ չունեիր, թռար, ոտքդ կոտրեցիր: Հիմա էլ նույն անխելքն ես ու բռնած գործդ քո թռնելու պես՝ վնասաբեր է:

## ՊԱՏՐԱՆՔ

Պարսկաստանից մի հայ է գալիս Փարիզ: Իջնում է հյուրանոցում: Բայց Փարիզը նրան չի գրավում:

Մի քանի փողոց, թանգարան, մի քանի շենք տեսնելուց հետո՝ հագեցած, անտարբեր է դառնում:

Մի օր էլ նրա բարեկամը գընում է նրա մոտ, հյուրանոց: Դըռան մոտ լսում է մի երգի մեղմ ձայն և աղբյուրի կարկաչ: Սա ի՞նչ պատրանք է. երա՞զ, իրակա՞ն: Նայում է բանալու ճեղքից, տեսնում՝ իր բարեկամը մահճակալի ներքևի փոքրիկ գորգը փռել է և սենյակի մեջտեղը ծալապատիկ նստել, ձեռքը դրել ձախ ականջին, վիզը թեքած, հայացքը վերացած, երգում է, իսկ աղբյո՞ւրը: Սենյակի ծորակի ջուրը բաց է թողել, որը կկլում է աղբյուրի պես...

Այդ պատրանքային վիճակում, նա պգում էր իրեն հայրենի իրականության մեջ:



# ՏԵՏԱՆՈՒՍ

*ՄԿՐՏԻՉ ԴԱԼԼԱՔՅԱՆ*

Ավագ եղբայրս՝ Հովհաննեսը, ճարպիկ ու բավականին երես առած տղա էր: Հինգերորդ տարին էր, ինչ դպրոց էր հաճախում ու այդ բոլոր տարիներին նրա չարությունների համար իմ Շուշան տատիկին այնքան էին դպրոց կանչել, որ սովորություն էր դարձել՝ շաբաթը մի քանի անգամ առանց կանչելու նա ինքն էր դպրոց գնում, առանց քաշվելու մտնում ուսուցչանոց, կանգնում ընկեր Իսկուհու դիմաց ու բարձրաձայն հարցնում.

— Մի ասեք տեսնեմ, էն սատանի ձագը էլ ի՞նչ օյիններ է հանել:

Երբ դասերը վերջանում էին, Հովհաննեսը շընչակտուր տուն էր հասնում, մի կողմ նետում գրքերով լի պայուսակը և, մի մեծ կտոր հաց կրծելով, սլանում Մակունց կալը: Անմիջապես նրա շուրջն էին խմբվում իրեն հասակակիցները, և Հովհաննեսն սկսում էր կարգադրել.

— Լսի՛ր, Գիքո՛ր, դու ամենաուժեղ ու քաջ տղան ես, դու Սասունցի Դավիթը կլինես, Բագրատը՝ Ձենով Օհանը, իսկ ես էլ՝ Մսրա Մելիքը: Էս երեխաներն էլ թող պարապ չմնան, մեր զորքը լինեն:

Մենք զարմացած իրար էինք նայում ու, ոչինչ չհասկանալով, լռում: Չէ՞ որ ամենաճարպիկն ու ուժեղը Հովհաննեսն էր և Դավթի դերը իրեն կսազեր: Երբ խաղն ավարտվում էր և, հաղթական «սուրը» օդի մեջ ճոճելով, քաջ Դավիթն անցնում էր «զորքերի» շարասյուների առջևով, դանդաղաքայլ ինձ էր մոտենում փոշեթաթախ «Մելիքն» ու քմծիծաղ տալով հարցնում.

— Հը՞, միամի՛տ, էլի չհասկացա՞ր: Չէ՞ որ նա ինձ միայն մեկ անգամ էր զարկում, իսկ ես՝ երեք:— Եվ ես հպարտացած մեծ եղբորս հնարամտությամբ, «ուռա՜» գոռալով գլխարկս մի քանի անգամ օդի մեջ վեր-վեր էի նետում:

Մի անգամ էլ, երբ Հովհաննեսը սովորականի նման ոտքը թեքեց դեպի Մակունց կալը, Շուշան տատիկը հասավ, ամուր բռնեց ականջից, ոլորեց ու ասաց.

— Հերիք էդ դեղնակտուցների հետ թրև գաս, անբա՛ն, ա՛ռ էս բահն ու փորփրիր ծառերի տակը, ջրի՛ր, չես տեսնո՞ւմ, չորանում են:

Հովհաննեսը, որ աշխարհում ամենից շատ տատիկից էր վախենում, առանց ծպտուն հանելու, ձեռքն առավ բահն ու շարժվեց դեպի տնամերձը: Ամեն անգամվա պես ես ստվերի նման հետևեցի նրան: Նա մոտեցավ, բարկացած բացեց այգու դռնակն ու տախտակներից մեկի վրա ցցված ժանգոտ մեխի սուր ծայրով անզգուշորեն պատռեց ափը: Ես լեղապատառ վազեցի տատիկի ետևից: Վազեվազ եկավ տատիկը, Հովհաննեսին տուն տարավ, փնթփնթալով մի լաթի կտոր այրեց, դրեց վերքի վրա, թաշկինակով կապեց ու բղավեց.

— Անպիտա՛ն, դիտմամբ արիր, որ չաշխատես, հա՞: Սպասիր ծնողներդ ֆերմայից գան, էն ժամանակ ես քեզ գործից փախչել ցույց կտամ:

Պարզվեց՝ եղբորս վերքերը բավականին շուտ են լավանում: Տասը օր անց այլևս ոչ մի հետք չէր մնացել: Սակայն երկու շաբաթ հետո, երբ հայրիկն ու մայրիկը ֆերմայից տուն էին վերադարձել, Հովհաննեսը անտրամադիր տուն մտավ և լացակումած ասաց.

— Բերանս դժվարությամբ եմ բացում, հայրիկ, դեմքիս մկանները ցավում են:

Գնալով Հովհաննեսի վիճակը ծանրանում էր: Հայրիկն ստիպված կեսգիշերին բժիշկ հրավիրեց: Բժիշկը եկավ, մանրամասն զննեց, հարցուփորձ արեց, իմացավ ժանգոտած մեխով ձեռքը պատռելու պատմությունն ու, հայրիկին մի կողմ կանչելով, ասաց.

— Երեխայի մոտ փայտացում է սկսվում՝ տետանուս: Դա շատ ծանր ու դաժան հիվանդություն է: Ժամանակին օգնության չհասար՝ հիվանդին անպայման կկորցնես: Կարծում եմ, հասկանում եք, անհապաղ պետք է հիվանդանոց տեղափոխել,— այնուհետև բժիշկը բացատրեց:— Հող ու աղբի մեջ փայտացման հարուցիչներ՝ որքա՜ն ուզեք: Զգույշ պետք է լինել: Մարմնի որևէ մասը ծակեց կամ պատռեց ժանգոտած մեխը, մետաղալարը, հողի մեջ ընկած ապակու կտորը կամ որևէ սրածայր իր, միևնույնն է, պետք է բժշկի դիմել: Նախապահպանական մի երկու սրսկում, և ամեն ինչ կվերջանա, հակառակ դեպքում վերջաբանը միշտ էլ կարող է ողբերգական լինել:

Հիշում եմ, այնուհետև ամեն ինչ մի տեսակ լուռ ու շատ արագ կատարվեց: Բժիշկը Հովհաննեսին սրսկեց և շտապ օգնության մեքենայով տարավ հիվանդանոց: Երկար բուժվեց եղբայրս այնտեղ, համարյա երկու ամիս, ու շատ էլ չարչարվեց:

— Մահճակալի ամենափոքր, աննշան ցնցումից, լույսից, նույնիսկ շշուկանման խոսելուց ու օդի ամենաթույլ հոսանքից նոպա էր սկսվում և պարանոցիս ու ողնաշարիս մկանները այնպե՜ս ուժեղ էին կծկվում ու պրկվում, որ քիչ էր մնում կտրվեին: Այդ սարսափելի ցավից կարծես սիրտս կանգ էր առնում: Ինչպե՞ս դիմացա, ինքս էլ չգիտեմ: Իսկ սրսկումներին թիվ ու հաշիվ չկար: Այդքա՜ն սրսկում ընդամենը մի քանի նախապահպանական սրսկման փոխարեն...— պատմում էր Հովհաննեսը՝ հիվանդանոցից վերադառնալուց հետո:

Այդ դեպքից հետո մեր տնեցիների աչքը շատ էր վախեցել, հատկապես տատիկինս: Հենց որ մեզնից մեկը մի փոքր, նույնիսկ աննշան քերծվածք էր ստանում, նա լեղապատառ հասնում էր ու վրա տալիս.

— Շո՛ւտ արեք, շո՜ւտ, բժշկի՛ տարեք, թող սրսկի, թե չէ երեխես էդ անիծած փայտի ցավով կհիվանդանա:

Մենք լիաթոք ծիծաղում էինք, իսկ Հովհաննեսն ուղղում էր.

— Փայտի ցավ չէ, ա՛յ տատիկ, այլ փայտացում՝ տետանուս:

Ծուշան տատիկը դժգոհությամբ թափ էր տալիս ձեռքն ու ինքնիրեն խոսում.

— Թող փայտացավ լինի, ի՞նչ տարբերություն: Բա մեր ժամանակներում էս տեսակ հիվանդություններ կայի՞ն:

Հովհաննեսը փոթկացնում էր ու նորից կատակում.

— Դե՛, իհարկե, տատի՛կ, էս ոչուփուչ ելած տետանուսը քո թոռնիկների հետ է ծնվել՝ նույն օրը:

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*



# ՁԻՆ ԱՆՏԱՌՈՒՄ

## (ժամանակակից հեքիաթ)

*ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ*

Գայլն անտառում հանդիպեց ձիուն.

— Այս ուշ ժամին ի՞նչ գործ ունես անտառում, ձի՛ ախպեր:

— Դուրս են արել տնից:

— Ինչո՞ւ: Ի՞նչ ես արել, աքացի՞ ես տվել տիրոջդ, թե՞ հարևանի արտն ես ընկել: Ո՞վ է տերդ:

— Ուստա Առաքելը:

— Դերձակ Առաքե՞լը, որ ապրում է կամուրջի մոտ:

— Այո՛: Դուրս արեց և ասաց. «Գնա՛, թող քոսոտ գայլերը քեզ լափեն»:

— Քոսո՞տ: Այդպես էլ ասա՞ց:

— Այո՛, այդպես էլ ասաց:

— Նա մեզ ինչի՞ տեղ է դրել,— բարկացավ գայլը,— մեր պապերը հին Հռոմի զինանշանի վրա են եղել:

Ձին ծիծաղեց:

— Ինչո՞ւ ծիծաղեցիր, ձի ախպեր: Ես ծիծաղելի բա՞ն ասացի:

— Իհարկե, ասացիր: Ի՞նչ նշանակություն ունի այդ դերձակ Առաքելի համար: Նրա ի՞նչ գործն է, թե ովքեր են եղել քո պապերը: Իմ պապերն էլ ապրել են արքայական ախոռներում: Ես էլ ազնվացեղ ձի եմ: Է՛, ինչ անենք, դուրս արեց և ետևից էլ աղաղակեց՝ «Գնա՛, յաբո՛ւ, գնա՛»:

— Դու նրա մոտ ես եղել, գուցե մի բանով բարկացրել կամ ծուլություն ես արել: Իսկ ինձ հետ ի՞նչ գործ ունի քո այդ դերձակը, որ այդպես անպատվում է իմ ցեղը: Իմ նախնիները ազնիվ և մեծ են եղել: Երբեք չեն ծառայել, ողորմություն չեն հայցել: Միշտ ազատ, հզոր և պատվարժան գայլեր են եղել:

— Մարդիկ ձեզ ստոր, նենգ գիշատիչներ են համարում:

— Մի ժամ առաջ միայն մի լավ գառնուկ եմ կերել,





համը բերանումս է դեռ, կուշտ եմ, ծի՛ ախպեր, կերածս վրաս հարամ մի՛ արա: Այսօր ուրախ, անհոգ օր է ինձ համար, մի՛ փչացնի լավ տրամադրությունս, խնդրում եմ քեզ: Երբեք ես այսքան կուշտ և այսքան բարի չեմ եղել:

— Այդ՝ շատ հազվադեպ բան է: Կուշտ գայլ ես չէի տեսել:

— Այո՛, ծի՛ ախպեր, դու իրավացի ես, իսկապես որ գայլերը միշտ էլ քաղցած են լինում: Այսօր ես կուշտ եմ և այսօր հասկացա, որ մեր ցեղը հանգիստ ու բարի է ի ծնե: Եթե սովը չլինի, մենք չենք չարանա: Ինչո՞ւ պետք է չարանանք: Չարանում ենք, որովհետև քաղցած ենք: Մարդիկ մեզ չեն կերակրում: Եվ չեն թողնում, որ մենք ինքներս մեր սնունդը հայթայթենք. հրացան, շուն ու թակարդներ առած՝ ընկնում են մեր ետևից: Ինչո՞ւ են այդպես անում: Քեզ եմ հարցնում, ո՜վ բարեպաշտ անասուն, ինչո՞ւ են այդպես անում մարդիկ: Մի՞թե ճիշտ են անում: Մի՞թե մեզ էլ բնությունը չի ստեղծել: Եթե ուտելը հանցանք է, ապա իրենք ինչո՞ւ են ուտում: Զարմանալի աշխարհ է մարդկանց աշխարհը. շներին պահում, կերակրում են, իսկ մեզ՝ հալածում: Ապա թող մի երկու շաբաթ այդ իրենց «հավատարիմ» շներին չկերակրեն, տեսեք, թե դրանք ի՜նչ կանեն, Մարդ կուտեն, ծի՛ ախպեր, մա՜րդ,— ասաց գայլն ու պառկեց ծառի տակ:— Այնքան հազվադեպ են այսպիսի օրերը, որ ուզում եմ աչքերս փակել՝ իրականությունը չտեսնելու, չզգալու համար: Թող երազի մեջ ապրեմ, գոնե մի քանի ժամ: Գիտեմ, վաղը նորից քաղցած եմ լինելու, իսկ մի քանի օր հետո կվնգվնգամ սովից: Անիծյալ լինի այս կյանքը: Ախր բոլորն էլ ուտում են, առանց ուտելու ինչպե՞ս կարելի է մնալ, ինչպե՞ս ապրես: Չկերար՝ կմեռնես: Բոլորը կարող են ուտել, մեզնից՝ գայլերից բացի՝ բոլորը: Ինչո՞ւ: Ինչո՞ւ չի կարելի: Մենք շունչ-կենդանի չե՞նք: Բոլորն էլ մեր մահն են ուզում: Ա՜խ, եթե այս ուտելը չլիներ, մարդն էլ, գայլերն էլ, ծիերն էլ, բոլորն էլ, բարի ու խաղաղ կլինեին: Ես հիմա կուշտ եմ: Հիմա չեմ ուզում, դրա համար էլ խաղաղ եմ ու բարի: Դու հիմա մտածում ես անշուշտ՝ այս ի՞նչ գայլ է: Գայլն էլ այսպե՞ս կլինի, տարօրինակ ճառեր է ասում, փոխանակ հարձակվի վրաս և ուտի, դատողություններ է անում: Այո՛, ծի՛ ախպեր, դու պարզապես չես հասկանա: Ես թույլ չեմ, ընդհակառակը, ես այսօր շատ ուժեղ և հզոր եմ, այնքան ուժեղ եմ, որ կարող եմ բաց թողնել քեզ: Ուզո՞ւմ ես վեր կենամ և քո այդ դանդալոշ շուրթերը համբուրեմ, ուզո՞ւմ ես, ճառեր ասեմ ամենավսեմ զգացմունքների մասին և, նույնիսկ, արտասվեմ մեռած պապերիդ վրա: Ես հիմա խղճում եմ այն գառնուկին, որ կերա: Բայց ես, հզոր եմ հիմա, հզոր եմ այնքան, որ ուտելու մասին չեմ մտածում:

— Դու ցանկանում էիր երազել,— ասաց ծին,— ես կհսկեմ, ոչ ոք չի համարձակվի խռովել քո հանգիստը: Հանձնվի՛ր մոռացության երջանիկ պահին, այսպիսի պահ կարող է այլևս չլինել:

— Շնորհակալ եմ, բարի՛ անասուն: Ես շատ հոգնեցի, ես այնքա՜ն մեղք եմ: Մի օր քեզ պարտահատույց կլինեմ:— Ասաց, թաթերը դրեց գլխին այնպես, որ ականջները ծածկվեն, պառկեց աջ կողին և անշարժացավ:

Արևը վաղուց արդեն իջել էր անտառի ետևը: Գիշերային թռչունները արթնացել, ծառերից ցած էին իջնում: Մթության մեջ անհետանում էին ծառերն ու ա-




ՀՈԲՈՍ ԱԳԵՐ

Չար ագռավը
Մի օր ծեգին
Խրատում էր
Փոքրիկ ձագին.
— Թռի՛ր գնա
Դաշտ ու հովիտ,
Ճանկի՛ր ու բեր
Կաքավ ու ծիտ:
Դու ունես ուժ,
Ունես թևեր,
Ինչ պատահի՝
Թռցրու բեր:



րահետները: Անտառի խորքից դեպի բացատներն ու գետակներն էր գալիս ծմակների դառնահոտ խոնավությունը ու անհանգստացնում ծիուն: Ձին մամուռի ու սնկի հոտ էր առնում և մտածում, որ այդ գիշերը կարող է իր վերջին գիշերը լինել աշխարհի վրա: Բայց ինչո՞ւ մեռնել, եթե դեռ կարելի է ապրել: Ինչո՞ւ չհեռանալ մահից, որն այսքան մոտ է: «Ահա այն, մահըս,— մտածում էր,— նա պառկած է ծառի տակ, հանգստանում, մարսում է կերածը: Առավոտյան նորից սոված կլինի: Ես նրա կերն եմ, մի՞թե պետք է սպասեմ, եթե կարելի է խույս տալ, ինչո՞ւ սպասել»: Իսկ այնտեղ, գետի մշուշում, առկայծում էին գյուղի ճըրագները: Ձիու ականջին հասան շների հաչոցներ և, նրան թվաց, թե շներից մեկի ձայնը իրենց Բողարի ձայնն է: Եվ այնպես լավ էր հաչում Բողարը, այնքան ջերմ ու մտերիմ, հազարավոր շների ձայների մեջ նա կճանաչի Բողարի ձայնը: Ինչքա՜ն է իր դունչը լիզել Բողարը: Ինչքա՜ն է քնել չոր խոտի վրա հենց իր մըսուրում:

Մութ գիշեր էր, հանգչում էին գյուղի ճրագները, գյուղն ընկղմվում էր խավարում: Լուսինը մերթ մըտնում էր ամպերի ետևը, մերթ՝ դուրս գալիս ու լուսավորում գյուղ տանող արահետը: Ձին անհանգիստ էր: Իսկ ծառի տակ շնթռած էր գայլը, կուշտ կերած գայլը: «Բոլորը տանն են հիմա,— անցավ ձիու մտքով,— Ուստա Առաքելը փակել է դռները: Երևի ախոռի դուռը բաց է թողել, փակելու կարիք չկա, դատարկ է այս գիշեր ախոռը: Հիմա քնած են երեխաները, ուստայի կինը, և միայն Բողարի քունը չի տանում: Նա չի իմանում, թե ինչ դրության մեջ է ձին, եթե իմանար, երևի կգար օգնության: Ազնիվ և քաջ շուն է Բողարը»:

Գայլը խորը քնի մեջ էր, նա երևի երբեք այդքան հանգիստ չէր քնել: Կշտությունը քուն է բերում: Այսպես չի կարելի, տուն պետք է գնալ: Բայց ինչպե՞ս անել, գայլը կարող է արթնանալ իր սմբակների դոփյունից և հետապնդել իրեն, հետո ինքը ստիպված պետք է կռվի գայլի հետ, և դեռ հայտնի էլ չէ, թե ինչով կվերջանա այդ կռիվը: Իսկ ինքը ապրել է ուզում, Բողարին տեսնել է ուզում: Նա մեկ էլ նայեց շնթռած գայլին, ապա շուռ եկավ և զույգ ոտով այնպիսի մի հարված հասցրեց քնած գայլի գլխին, որ նա միայն տնքաց ցավից ու ոտքերը փռեց, անշնչացավ:

— Կուշտ փորով սատկած գայլ ես դեռ չէի տեսել: Դու առաջինն ես, գա՛յլ ախպեր: Դու այլևս երբեք սոված չես լինի և միշտ այսպես անխռով ու բարի կմընաս: Քեզ այլևս չեն հալածի մարդիկ, թակարդներ չեն լարի, շներին քսի չեն տա: Բարի գիշեր, գա՛յլ ախպեր: Բողարը կանչում է ինձ, տուն պիտի գնամ:

Մարեցին գյուղի վերջին ճրագները, իսկ Բողարը շարունակում էր հաչել, թախիծ կար նրա ձայնի մեջ: Ձին դուրս եկավ արահետ, սկզբում քայլեց, ապա արագացրեց քայլերը, հետո սկսեց վազել: Գիշերային լռության մեջ ահավոր թափով տարածվեց նրա քառատրոփ ընթացող սմբակների դոփյունը, և նա կամաց վրնջաց: Լուսինը լուսավորում էր գյուղ տանող արահետը: Ձին ուրախությունից բարձրացրել էր պոչը և վազում էր: Այդպես ուրախ երբեք չէր վազել:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ





Թե գողացած
Պատառ չուտես
Դու ագռավի
Էլ ի՞նչ ճուտ ես.—
Փոքրիկ ճուտը
Ոգևորված,
Ելավ իսկույն
Որսի գնաց:
Բայց խոլ բազե
Արյունախում,
Ծանկեց նրան.
Կերավ հում-հում:



Մայրը լացեց
Աղեկտուր.
— Ա՜խ, բալի՛կ ջան,
Ո՞ւր կորար, ո՞ւր...—
Մի ծիտ ասաց.
— Անմի՛տ ագռավ,
Քո չար լեզվից
Ձագդ կորավ:
Դու ճտերիդ
Պետք է գթաս,
Էլ այդպիսի
Խրատ չտաս:

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

# ԱՅՍ ԾՈՂԸ ՈՒ ՁԱՆՁՐՈՒՅԹԸ

ԱՐԻԳ ԱՎԱԳՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Առնտուր չլինելը կարծես դեռ քիչ է, որ այս շոգն ու ձանձրույթը եկել, ձգվել են թեյարանի դռան շեմին, ծույլ գամփռների նման դնչները թաթերին են դրել և իրենց հոգնած աչքերը պլշել են հենց միայն ու միայն թեյարանատեր Աբբաս աղայի աչքերին:

«Հը՞,— կարծես միաձայն հարցնում են նրանք,— ո՞նց են գործերդ, թեյարանատե՛ր Աբբաս աղա, Սայադի որդի»:

«Սայադ հայրիկի ժամանակ, թող լույս իջնի նրա գերեզմանին, աշխարհն ուրիշ էր,— մտածում է թեյարանատերը և միաժամանակ ականջի պոչով լսում երկու իսպահանցի որսորդների կռույցը,— շոգն էլ էր ուրիշ, սրա նման չէր գալիս, աներես շան նման ներսում դռանդ ու աչքերից թափվող կրակով ունեցածչունեցածդ խանձել ուզում: Այն ժամանակ նա գալիս էր մի տեսակ կարծես հապաղումներով, ծառերի ըստվերները դանդաղորեն կարճելու հանդիսավորությամբ: Չէ, աշխարհը ջուր է եկել և դարձել է հեչուփուչ... Սայադ հայրիկի ժամանակ հաճախորդները թեյարան էին թափվում ոնց որ բանակ, ես ու մեր աշխատող Թուլե խանը չէինք հասցնում նույնիսկ բաժակները լվանալ, ինքնաեռի կրակը լուսաբացից մինչև իրիկուն հարյուր հազար անգամ նորոգում էինք... Տեսնես Թուլե խանն ի՞նչ եղավ, եթե մեռել է՝ աստված հոգին ողորմի, եթե ողջ է, տեսնես աշխարհի ո՞ր պոչումն է թափառում»:

Աբբաս աղան չիբուխը կպցրեց, մի կողմ շպրտեց ուսին փռած սրբիչը և նստեց երկու որսորդների մոտ, քանի որ նրանք այս դժոխային շոգում խոսում էին սառնամանիքների մասին:

«Իսպահանցիներն ի ծնե փչան են,— մտածեց նա,— որսորդներն էլ են ի ծնե փչան, հիմա սրանք և՛ իսպահանցի են, և՛ որսորդ: Իսպահանցիները հանճարեղ մզկիթներ են կառուցել, աշխարհին հանճարեղ մտածողներ են տվել, բայց նրանց մեջ երբեք հանճարեղ որսորդ չի եղել»:

Թեյարանատերը նայեց կողքներին դրված հրացաններին, դրանք անդրջրհեղեղյան երկփողանիներ էին՝ անպետք ու ավելորդ, դրանց կոտորակներով ծիտն անգամ չէր վիրավորվի, բայց որսորդները թեյը ֆռֆռացնելով խմում էին և խոսում էին այնպիսի կրքոտ հպարտությամբ, որ քեզ թվում էր, թե յուրաքանչյուրը նրանցից հարավային եղեգնուտներում մինչև հիմա առնվազն մի տասը, քսան շիկակարմիր վագր սպանած կլինի:

Միայն թե հիմա Աբբաս աղան ափսոսաց, որ սկզբից ուշադրություն չի դարձրել նրանց կռույցին, իսկ նրանք արդեն երեք ժամ կլինի, որ նստել են այստեղ և մի ամբողջ ինքնաեռ թեյ խմել:

— ...Քո ասածը հե՞չ,— պատմում էր որսորդներից մեկը: Նա միջին տարիքի մարդ էր՝ թմփլիկ թշերով, կանացի բարակ մատներով ու փքված փորով, մի խոսքով, ամեն ինչի նման էր, բացի որսորդից,— քո ասածը հե՞չ, ախպորս ասեմ, սրանից ուղիղ երկու տարի առաջ, ձմեռվա կեսին, որսի էի բարձրացել Ալբորզի լեռնաշղթան, երբ բքի հանդիպեցի, ի՞նչ բուք... Լեռնակածանին հանկարծ դեմս մի արջ երևաց, էն է, ուզում էի հրացանը քաշել, մեկ էլ արջը թռավ դեպի ծառը, համա ծառին չհասավ...

— Բա ի՞նչ եղավ,— հարցրեց թեյարանատերը,— խփեցի՞ր:

— Չէ, էլ ի՞նչ խփել, հայվանը սառեց, մնաց օդում:

Ժամանակին Աբբաս աղան Հաջի Ռամզանի ուսումնարանում մի քանի տարի կարդացել էր և գիտեր երկրի ձգողական ուժի մասին, ուստի ասաց.

— Չեղա՞վ, եղբա՛յր, քո էդ արջը չէր կարող մնալ օդում. կամ կհասներ ծառին, կամ վեր կընկներ, էս հեչուփուչ աշխարհում ձգողական ուժ գոյություն ունի՞, թե՞ չունի:

— Յա՛,— կարմացավ որսորդը և նույնիսկ ծիծաղեց,— ցրտի մասին ենք խոսում, էդ քո ձգողական ուժն էլ էր Ալբորզում սառել, սառույց կտրել:

Թեյարանատեր Աբբաս աղան փոշմանեց, որ ընդհատեց նրան, քանի որ լռություն տիրեց և այդ լռության մեջ նա նորից տեսավ թեյարանի շեմին ձգված շոգն ու ձանձրույթը, և նրա մտքերը նորից շաղվեցին, նորից նա հիշեց Սայադ հայրիկի ժամանակները ու նորից մտածեց:

— Հա՛,— նա գլուխը թափահարեց, մտքերից դուրս եկավ և դիմեց մյուս իսպահանցի որսորդին,— դո՛ւ էլ, եղբա՛յր, մի բան պատմիր Ալբորզ լեռնաշղթայի սառնամանիքների մասին:

Երկրորդ որսորդն աշխուժացավ: Սա էլ թմփլիկ թշեր ուներ, մոդայիկ բարակ բեղեր. նրա հագուստից վարդաջրի բուրմունք էր փչում, ու նա էլ ամեն ինչի նման էր, որսորդից բացի:

— Ալբորզն ի՞նչ սառնամանիք ունի որ...— հանդիսավոր հայտարարեց նա,— ամեն անգամ էնտեղ գնալիս, նույնիսկ ձմռան կեսերին, շոգից ես քրտնում էի: Սառնամանիք եք ուզում՝ Համադանի Ալվանդ սարը բարձրացեք: Մի տարի հորեղբորս տղայի՝ Սաբայի հետ, ձմռանը որսի բարձրացանք Ալվանդի գագաթը ու հենց էդ սարի վրա էր, որ բուք ու բո-

րանի դեմ առանք: Ես ձեզ, եղբայրնե՛ր, ասում եմ՝ բուք ու բորան, դուք իմացեք ջահանդամից եկած բոցեղեն սառույց...

Աբբաս աղան ուզեց զգալ «բոցեղեն սառույցը» և զգաց. զգացած հաճույքից ու բավականությունից նրա երեսին հովի քնքշությամբ մի ժպիտ փռվեց:

— Էն է, ուզում էինք սառչել ու փայտանալ մեր տեղերում, երբ մի քարանձավ նշմարեցինք,— շարունակեց նա,— և պատսպարվեցինք այդ քարանձավում: Ի՜նչ ցուրտ, ի՜նչ ցուրտ, աստված իմ, խոսում էինք իրար հետ, բաներ էինք ասում, համա իրար չէինք լսում, գիտե՞ք ինչու:

— Ինչո՞ւ,— հարցրեց Աբբաս աղան:

— Որովհետև մեր արտասանած խոսքերն իսկույն սառչում էին օդում ու թափվում ձյան վրա:

— Սո՛ւտ է...— հեգնանքով նետեց մյուս որսորդը:

Թեյարանատերը տեղում ձգվեց ու բոցավառվող աչքերով ճչաց նրա վրա.

— Սուտը դո՛ւ ես, պատմի՛ր, եղբայր իմ:

Եվ երկրորդ որսորդը շարունակեց.

— Հա, մացառ հավաքեցինք, մի փոքրիկ խարույկ վառեցինք և մեր արտասանած սառցե խոսքերը ժողովեցինք ու լցրինք կրակի վրա, որպեսզի հասկանանք, թե վերջապես ի՛նչ ենք ասում իրար: Բա՜, էսպիսի բաներ են պատահում մեր աշխարհում: Թա-կա չայ չկա՞, Աբբա՛ս աղա:

Թեյարանատերը մտել էր հոյակա՜պ, հոյակա՜պ ստերի գեղեցիկ ոլորտները և որսորդի հարցը չլսեց.

— Աբբա՞ս աղա:

Աբբաս աղան տեղից վեր կացավ, չգիտես ինչու շուրջն էր նայում և չգիտես ինչու իրեն թվում էր, թե ինքն ընկել է մի երանելի կով ջրապտույտի մեջ:

— Թակա չա՞յ,— հարցրեց,— կա՛, ձեզ համար, եղբայրնե՛ր, ամեն ինչ կա...

Իսպահանցի որսորդները խմեցին իրենց վերջին բաժակ թեյը: Թեյարանատերը հրաժարվեց նրանցից փող վերցնել:

Էսօր էլ իմ հյուրը եղեք,— ասաց նա, նրանց հրաժեշտ տալով:

Եվ երբ նրանք իրենց անդրջրհեղեղյան երկփողանի հրացանները գցեցին ուսներն ու գնացին, և երբ նրանց քայլերի ձայնը մարեց դրսում, շոգն ու ձանձրույթը նորից վերադարձան, ձգվեցին թեյարանի շեմին, ծույլ գամփռների նման դնչները թաթերին դրեցին, խոնջ հոգնած աչքերը պլշեցին Աբբաս աղային, և թեյարանատերը նորից մտքերով գնաց դեպի Սաբուր Խալիլի ժամանակները ու բեղերի տակ կամացուկ մրմնջաց.

Տեսնես Թուլե խան ի՞նչ եղավ...



Մտնում է կեսօրը: Քաղաքի բոլոր ծայրերից դեպի շուկայի հրապարակն են շտապում մարդկանց խմբեր, քաղաքացիներ՝ իրենց թոռնիկների ու դեռատի զավակների հետ, մերձակա գյուղերի բնակիչներ, հարևան վոյեվոդություններից ժամանած հյուրեր, արտասահմանյան տուրիստներ: Նրանք գալիս, խմբվում են քաղաքապետարանի շենքի դիմաց...

Ժամը ճիշտ տասներկուսին քաղաքապետարանի գլխավոր աշտարակի վրա բացվում են փոքրիկ դարբասներ և, ի զարմանս հյուրերի ու ի հրճվանք մանուկների, կողք-կողքի կանգնած՝ առաջանում են երկու այծիկներ, թափահարում գլուխները և, կարծես հանկարծ իրար նկատելով, շուռ գալիս, դեմ-դիմաց կանգնում, խըրոխտ հայացքով զննում միմյանց, գլուխները կռացնում այնպես, որ ճակատներն ու պոզերն իրար են առնում... Ապա կարծես շանթահարված, ետ են ցատկում ու... ընկըրսվում է այծերի կռիվը:

Կատաղի, անզիջում: Նրանք նորից ու նորից իրար վրա են նետվում, գլուխներով ու պոզերով հարվածում միմյանց: Զարկում են, զարկվում համառ այծիկները, մինչև որ հոգնում, ետ են քաշվում և արդեն մեղմ ու հաշտ հայացքով իրար նայելով՝ կրկին շուռ գալիս, կանգնում կողք-կողքի, դանդաղորեն ետ են գնում, ուղղակի սահում դեպի իրենց բույնը: Հինգ րոպե է տևում այծիկների մենամարտը, որը սակայն չի լուծում նրանց վեճը, այն հետաձգում է միայն քսանչորս ժամով:

Իսկ այդ ի՞նչ այծիկներ են և ինչպե՞ս են նրանք հայտնվել քաղաքակիրթ աշխարհի առաջադեմ մի ժողովրդի, լեհ ժողովրդի հնագույն ու խոշորագույն քաղաքներից մեկի, Լեհաստանի ամենաառաջին մայրաքաղաք Պոզնանի քաղաքապետարանի աշտարակում:



Ասում են, որ հարյուրամյակներ առաջ (ճիշտ ժամանակը ոչ ոքի հայտնի չէ, իսկ Պոզնանն էլ արդեն հազար տարեկան է), երբ Պոզնանը դեռ փոքրիկ քաղաք էր և նրա հիմնական տնտեսական կենտրոնը շուկայի հրապարակն էր, մերձակա բնակավայրերից իրենց անասուններն ու մթերքները վաճառելու և զանազան ապրանքներ գնելու համար այստեղ էին հավաքվում հազարավոր մարդիկ: Ամեն օր կրկնվող այդ առուծախը սովորույթ էր դարձել և հրապարակը մշտական տոնավաճառի տեսք ուներ: Ավանդական այս սովորույթը մինչև այսօր էլ պահպանվել է, և ամեն գարնան Պոզնանում կազմակերպվում է միջազգային մեծ տոնավաճառ:

Ահա այդպիսի մի օր, մի գյուղացի շուկա է բերում երկու այծ, որ վաճառի և իր ընտանիքին անհրաժեշտ ապրանքները գնի: Շատ է նա շուկայում ման գալիս իր այծիկները վաճառելու համար, թե քիչ, մեզ հայտնի չէ: Բայց հայտնի է, որ ի վերջո գտնվում է գընորդ: Սակարկում են, վիճում ի վերջո համաձայնում են, և գյուղացին վաճառում է իր այծերը մի շրջիկ վաճառականի:

Գոհ իր կատարած գնումից, այծիկների տերը մտնում է մոտակա պանդոկներից մեկը՝ մի քիչ ուտել-խմելու, նախապես այծիկներին մի ցցից կապելով: Բայց երբ պանդոկատիրոջ հետ հաշիվը մաքրում, դուրս է գալիս փողոց... թե դուք այծիկներին տեսել եք, նա էլ տեսնում է: Կապած տեղում այծիկներին չգտնելով, վաճառականը հուզված սկսում է որոնումները ամբողջ շուկայով մեկ:

Չորքոտանիները, սակայն, չըկան ու չկան: Հանկարծ բազմության մեջ նա նկատում է այծիկները իրեն վաճառող գյուղացուն ու պինդ կպչում նրա օձիքից...

— Կա՛մ այծիկներս գտիր, կա՛մ փողերս վերադարձրու,— գոռում է վաճառականը:

— Ի՞նչ այծիկներ, ա՛յ հոգիս,— պատասխանում է գյուղացին:— Քանի՞ ժամ առաջ եմ ես դրանք վաճառել, փողն էլ գրեթե ծախսել եմ և ուր որ է մեր գյուղի ճամփան եմ բռնելու: Ի՞նչ իմանամ, թե դու ինչ ես արել այծիկները: Չէ՞ որ նրանք արդեն քոնն են:

— Չէ՛ որ չէ,— համառում է վաճառականը:— Կա-չկա քո այծիկները վարժեցրած էին, դու նըրանց ինձ վաճառեցիր, իսկ հետո նրանք փախան ու վերադարձան քեզ մոտ: Դու խաբեբա ես և ազ-

# ՍՈՒՐԲ

նիվ մարդկանցից փող ես կորզում: Կա՛մ այծիկները տուր, կա՛մ փողերս:

— Ա՛յ մարդ, դու քրիստոնյա չե՞ս,— շարունակում է գյուղացին,— ես ի՞նչ իմանամ, թե ինչ եղան այդ անպիտան այծիկները: Կամ, վերջապես, անասուն ես առել՝ տեր կանգնիր, ո՞վ գիտե ի՛նչ սատանա մտավ այդ հիմարների գլուխը և ո՛ւր կորան:

Գյուղացու այս խոսքերը ինչ-ինչ ներգործություն են ունենում վաճառականի վրա, և նա ավելի համառ է դառնում:

— Ա՛յ, տեսնո՞ւմ ես, վհո՞ւկ,— գոռում է նա,— դու ինձ կախարդված այծեր ես վաճառել, եթե սատանան է նրանց հետ գործեր բըռնում:

— Վհուկը դո՛ւ ես, որ անմեղ մարդկանց շառով ես տալիս,— արդեն բարկացած բացականչում է գյուղացին:— Բոլորը գիտեն, որ ես հողագործ եմ և ապրում եմ այստեղից ոչ հեռու (ու տալիս է գյուղի անունը, որը, սակայն, ներկաներից ոչ ոք չի լսել ու չգիտե):

— Դու ո՞ւմ ես վիրավորում,— զայրացած գոռում է վաճառականը:

# ԱՅԾԻԿՆԵՐԸ

Մեկը՝ հա՛, մյուսը՝ չէ՛: Վաճառականը՝ գտիր, գյուղացին՝ իմ գործը չէ... Մինչև որ նրանց աղմուկն սկսում է ուշադրություն գրավել:

Հետզհետե վեճը տաքանում է, խմբվում են մարդիկ, ոմանք՝ ցանկանալով հարթել վեճը, ոմանք՝ ուղղակի հետաքրքրասիրությունից, ոմանք էլ սատանայի ու վհուկի մասին իրենց լսածը մինչև վերջ հասցնելու ձգտումով և, նույնիսկ, գուցե իսկական սատանա տեսնելու հույսով: (Այն խավար դարում դրանք չափազանց հետաքրքիր և միաժամանակ վերին աստիճանի ազդեցիկ «արարածներ» էին, որոնց հետ գործակցելը կամ կապվելը դատապարտվում էր ինչպես եկեղեցու այնպես էլ հավատացյալ ժողովրդի կողմից):

Ինչևէ, վեճը ուր որ է կռիվ էր դառնալու, երբ մեկը խորհուրդ է տալիս դիմել քաղաքապետին, որը միաժամանակ նաև քաղաքի ու շրջակայքի դատավորն էր: Ու ամբոխը շարժվում է դեպի քաղաքապետարան:

Դեռ քաղաքապետարան չհասած՝ մեկը լսելով, որ կռիվը երկու կորած այծիկների պատճառով է սկսվել, հարցնում է.

— Շիկամորուք երկու այծիկնե՞ր էին դրանք, սպիտակ խալերը ճակատներին:— Ու ստանալով դրական պատասխան, հայտնում է, որ քիչ առաջ ինքը տեսավ, թե ինչպես երկու այդպիսի այծեր այստեղից վազելով անցան ու մտան ուղիղ... քաղաքապետարան:

Այս լսելով, գյուղացին ու վաճառականը մի պահ մոռացած վեճ ու կռիվ, վազում մտնում են քաղաքապետարան: Նրանց հետևում է ամբոխը: Եվ որովհետև ամենուրեք դռները փակ էին (օրը կիրակի էր) ու միջանցքներում էլ այծիկները չէին երևում, աստիճաններով հարկ-հարկ բարձրանալով, նրանք հասնում են ձեղնահարկ:

Ո՞վ զարմանք: Այծերն իրոք որ քաղաքապետարանի ձեղնահարկում էին: Բայց մարդկանց ուշադրությունն անմիջապես շեղվում է նրանցից, քանի որ ձեղնահարկում հրդեհ էր բռնկվել: Տագնապի լուրը կայծակի արագությամբ տարածվում է քաղաքով մեկ:

Քաղաքապետարանում հրդե՜հ է:

Կացիններով, սրածայր երկաթաձողերով ու ջրով լի դույլերով մարդիկ նետվում են դեպի քաղաքապետարանի տանիքը՝ հանգցնելու համար այնտեղ բռնկված հրդեհը: Եվ քանի որ այն նոր էր միայն սկսվել, դա նրանց հաջողվում է առանց մեծ դժվարության:

Իսկ այծիկների նոր տերը գոհ, որ գտավ իր կորուստը, կրկին պարանը գցում է անասունների վիզը և շտապում դեպի տուն: Այծիկները վաճառող գյուղացին էլ նրա հետ կողք-կողքի շտապում է դուրս, որ իր կիսատ գործերը վերջացնի և գյուղ վերադառնա:

Հանկարծ հրդեհը հանգցնողներից մեկը հիշում է, թե ինչ պարագաներում իրենք հայտնվեցին քաղաքապետարանի ձեղնահարկում ու նկատեցին հրդեհը:

— Կա-չկա այդ այծիկները սուրբ էին,— ասում է նա,— որ կապած տեղից փախան, բարձրացան քաղաքապետարանի տանիքը՝ մարդկանց հայտնելու, թե այնտեղ հրդեհ է բռնկվել:

Ու... մարդիկ ընկան փողոցից-փողոց՝ գտնելու անհայտ հերոսներին: Շուտով նրանք գտան քիչ առաջվա կռվողներին և երկու այծիկների հետ միասին ետ բերեցին քաղաքապետարան: Մինչ այս, մինչ այն, արդեն իր տեղում էր և՛ քաղաքապետը: Հավաքված էր նաև քաղաքի ավագանին: Հրդեհի լուրը անհանգստացրել էր բոլորին:

Ինչպե՞ս վարվել այծիկների և նրանց երկու տերերի հետ: Հաշվի առնելով համաքաղաքացիների պահանջը, ավագանին միջնորդում է քաղաքապետարանի առջև՝ յուրաքանչյուրին հատուցել ըստ ծառայության: Եվ որոշվում է՝ գյուղացուն տալ այծիկների մեկ արժեքը ևս, վաճառականից վերցնել այծիկները՝ կրկնակի արժեքի հատուցմամբ: Իսկ այծիկներին...

Նրանց քաղաքապետարանը վերցնում է իր խնամքի տակ և պահում իր բակում՝ քաղաքի հաշվին: Այն արարքի համար, որի շնորհիվ քաղաքապետարանը, իսկ հնարավոր է նաև, որ ամբողջ Պոզնանը, փրկվեց վերահաս աղետից, այծիկներին համարում են սուրբ:



Դարեր են անցել, բայց մարդիկ ավանդաբար մեծարում են այդ երկու այծիկներին:

Լեհաստանի հնագույն մայրաքաղաքի փրկիչների պատվին քաղաքապետարանի կենտրոնական աշտարակում հատուկ տեղ է պատրաստված, որտեղ այծիկները կարող են, ի հաճույս իրենց մեծարող մարդկանց, ամեն օր հայտնվել և զվարճացնել հասարակությանը:

Ու այն, ինչ մարդիկ այսօր տեսնում են քաղաքապետարանի կենտրոնական աշտարակի հարթակի վրա, բնավ էլ այծերի կռիվ չէ, այլ խաղ: Այդ նույն այծիկներն են այնտեղ խաղում՝ ճիշտ այնպես, ինչպես մի ժամանակ խաղում էին քաղաքապետարանի բակում, սուրբ օծվելուց հետո:

ԱՐԹՈՒՐ ԼՅՈՒԼԻԿՅԱՆ



Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 2 փետրվար 1970 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ Ա. Ա. ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան-15, Կարմիր բանակի փողոց, № 15, հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 05365: Պատվեր՝ 6: Տպաքանակ՝ 69800: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 23/II, 1970 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 10 կ.

Քունը կենսականորեն անհրաժեշտ է: Չքնող կենդանիները կամ շատ կարճ են ապրում, կամ չունեն ուղեղ և նյարդեր: Շունը անքուն դիմանում է միայն հինգ օր, իսկ սոված՝ շատ ավելի երկար: Քունը հանգստացնում է ամբողջ օրգանիզմը. թուլացնում է մկանները, դանդաղեցնում սրտի վարկերը, իջեցնում արյան ճնշումը, հանգցնում ուղեղի գրգռիչներն ու էլեկտրահոսանքները:

Կենդանիները, թշնամու ահից, սովորաբար քնում են մակերեսորեն, ասես թե նիրհում են՝ մերթ ընդ մերթ բացելով աչքերը:



Ամենից խորը քընում է ջրթեղ արջը: Շիմպանզեն քնում է 12—13 ժամ, հիմնականում՝ գիշերը, որոշ ժամանակ էլ՝ ճաշից հետո: Շատ են քընում խոզերը, իսկ ռեկորդը պատկանում է օձերին, որոնք, ասում են, պարթնում են միայն կեսօրին, մի երկու ժամ կեր որոնում և ապա քընում մինչև հաջորդ կեսօրը: Իսկ ծովախոզուկը, ընդհակառակը, համարյա չի քնում. նիրհում է՝ երկու-երեք րոպեն մեկ աչքերը փակելով: Այդպես են քնում նաև նապաստակներն ու ճագարները:

Դելֆինները երբեմն մի շաբաթ շարունակ գիշեր-ցերեկ գնում են նավերի ետևից: Իսկ ե՞րբ են քնում: Պարզվում է, որ նրանք քնում են լողալու ընթացքում, մի կես ժամով: Փորձերը ցույց են տվել, որ ջրային կենդանիներին շատ ավելի քիչ ժամանակ է պետք քնից հագենալու համար, քան ցամաքայիններին: Նույնիսկ մարդը, վաննայում 3 ժամ քնելով, նույնքան հանգստանում է, որքան 7—8 ժամ՝ անկողնում: Բանը նրանումն է, որ ջրում մարմինն ինչ-որ չափով անկշռելիություն է ձեռք բերում, պակասում է երկրի ձգողական ուժը:

Փղերը քնում են 2—3 ժամ և այն էլ ոտքի վրա: Ոտքի վրա նիրհում են էշը, ոչխարը, կովը, աղվեսը, մուկը: Միայն շերտավոր ջրարջն է, որ քնում է ետևի ոտքերին կանգնած, կողքը հենելով ծառաբնին:

Ճյուղից գլխիվայր կախված են քնում չղջիկները, թռչող շները, համրագնացները, լորիկուլուս թութակները, թիթեռները: Սկյուռները երբեմն քնում են՝ երկու ոտքով հենված մի ճյուղին, երկուսով՝ մյուս ճյուղին, կամուրջի նման:




# ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ՔՈՒՆԸ

Գորիլան, օրանգուտանգը և շիմպանզեն քնելիս տակները փռում են տերևներ, ճյուղեր, խոտեր: Վայրի փիղը գլուխը դնում է խիտ թփուտներին, իսկ ընտանին կնճիթով խոտ է հավաքում դնում գլխի տակ՝ իբրև բարձ: Աղվեսի բարձը իր պոչն է, այդպես են քնում նաև մեծ մրջնակերն ու պանդան, միայն թե սրանց պոչը ծառայում է նաև իբրև վերմակ:

Իսկ ինչպե՞ս է քնում երակարավիզ ընձուղտը: Պարզվում է, որ ծեր ընձուղտը գլուխը դնում է գետնին, իսկ ջահելը՝ տանում դնում է իր գավակին: Ջայլամը թեև թռչուն է, բայց թռչունի նման չի քնում: Նա կամ գլուխը վեր է ցցում, կամ կախում գետնին: Բադը ջրում քնելիս մի ոտքը հպում է մարմնին, իսկ մյուսով մերթ ընդ մերթ թիավարում: Այդպիսով, դանդաղ պտտվում է տեղում և չի քշվում դեպի լճափը: Զվարճալի է փոկի քունը. փռվելով ջրի երեսին, նա գլուխը խրում է ջրի տակ և պարբերաբար ավտոմատորեն դունչը դուրս է հանում, ռունգերը բացում, մի քանի անգամ շունչ քաշում ու նորից թաքցնում ջրի տակ: Իսկ աչքերը փակ են: Երբեմն էլ սուզվում է ջրի հատակը և շնչելու համար բարձրանում վեր:

Ձուկը քնում է ջրի հատակին կամ ստորջրյա անցքերում: Շնաձուկը քնում է աչքերը փակ, կողքի վրա: Ձկներ կան, որոնք քնում են գլխիվայր կախված կամ ուղղահայաց դիրքով: Թյունն և էլեկտրական լոքոները քնում են մեջքի վրա, իսկ գնդաձուկը՝ աջ կողքին և իրեն ծածկում է ավազով: Ամերիկացի Գաջերը մի անգամ լուսանկարել է քնած կարմրախայտերին. սրանք պառկել էին երամով, ութ շարք կազմած, հավասար հեռավորությամբ: Ամենից զարմանալին ջրածիծառների քնելն է: Սրանք, երամ կազմած, բարձրանում են ամպերից վեր և քնած ճախրում, պտտվելով միևնույն ուղղությամբ, իսկ լուսաբացին իջնում են կեր որոնելու:

Շատ միջատներ, ինչպես և թռչուններ, սիրում են գիշերել երամներով: Հակինտ ցեղի մեղուների արուներն ու էգերը առանձին պարսերով են քնում: Կրետներից ոմանք քնելիս թաթերով կամ ծնոտներով կառչում են ցողուններից, ոմանք ապաստանում են պատերի ճեղքերում, ոմանք գետնի մեջ բույն են փորում, մտնում ու մուտքը հողով փակում, մյուսները՝ ծաղկապսակներն են ընտրում իբրև ննջարան ու մի քանի գիշեր մնում այնտեղ: Մրջյունները գիշերը փակում են մուտքերը, իսկ որը չի հասցընում ժամանակին տուն գալ, քնում է՝ ուր որ պատահի: Արթնանալիս մարդու նման ձմլկտում են, բերանները բացում, ասես թե հորանջում են:

Կենդանիներն էլ են երազներ տեսնում և հաճախ՝ սարսափելի երազներ: Փղերը վատ երազներից փողհարում են, իսկ կապիկները՝ ճչում:

Գիտնականները վերջերս հանգել են այն մտքին, թե առանց երազի մարդն ապրել չի կարող: Նույնիսկ կարծում են, թե ամեն մարդ պետք է որոշակի չափով երազներ տեսնի, և եթե տվյալ օրը չի տեսել, ապա նա անհրաժեշտ դոզան լրացնելու է հաջորդ օրերին: Ըստ երևույթին կենդանիների համար էլ որոշ դոզայով երազներ տեսնելն անհրաժեշտություն է:

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*



## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» № 1

**Ուղղահայաց**

1. Եղնի, 2. Հաշեկ, 4. Սահնակ, 5. Պանամա, 8. Աբոմհասան, 9. Ֆոբոս, 10. Սոկրատես, 13. Գրինվիչ, 14. Ձնծաղիկ:

**Հորիզոնական**

3. Եղյամ, 6. Գալանտերյան, 7. Պրագա, 10. Սումակ, 11. Ուզբեկ, 12. Գրիգ, 14. Ձյուն, 15. Անտառ, 16. Կեռաս:



